

# Դպրոց ենք գնում



*ՌԱՖԱՅԵԼ ԿԱՍՊՅԱՆ* *Նկ. Տ. ԹՈՔՄԱՋՅԱՆԻ*

Արևն էլ կարծես
Շուտ է արթնացել,
Արևն էլ ինձ պես
Աչքերը բացել,
Ժպտում է խաղաղ,
Բարձր երկնքում
Եվ կարծես ուրախ,
Դպրոց է գնում:
Գետակը փոքրիկ
Քարից քար թռչում,
Ուրախ, երջանիկ,
Երգում է, ցնծում.
Երբ նայում եմ ես,
Այնպես է թվում,
Թե գետակն ինձ պես
Դպրոց է գնում:
Եվ որքա՜ն շատ են
Մարդիկ փողոցում...
Իմ կողքով շտապ
Մի մարդ է անցնում:
Ծերունի է նա,
Ձեռքին՝ պայուսակ,
Բայց դեմքին նրա
Կա այնքան բերկրանք,
Որ ով էլ նայի,
Կասի իր մտքում,—
«Պապն այս երևի
Դպրոց է գնում»:
Այնպես ուրախ է
Մեր քաղաքն այսօր,
Ժպտում են խաղաղ
Շենքերը բոլոր:
Աշնան գեղեցիկ
Զգեստներ հագել՝
Ծառերն էլ ասես
Ուզում են քայլել.
Իսկ երբ քայլեն,
Գիտեմ, անպայման
Նրանք էլ կրկնեն
Դպրոցի ճամփան:
Չգիտեմ ինչու՝
Այնպես է թվում,
Թե բոլորն ինձ պես
Դպրոց են գնում:







*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 9

ՍԵՊՏԵՄԲԵՐ

1952 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 24-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ


# Ի ԳԻՏՈՒԹՅՈՒՆ ՀԱՄԿ(Բ)Պ ԲՈԼՈՐ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ

*ՕՐԵՐՍ ՄՈՍԿՎԱՅՈՒՄ ԿԱՅԱՑԱՎ ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԸ։*

*ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ ՈՐՈՇԵՑ 1952 ԹՎԱԿԱՆԻ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 5-ԻՆ ՀՐԱՎԻՐԵԼ ՀԱՄԿ(Բ)Պ ՀԵՐԹԱԿԱՆ XIX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ։*

## XIX համագումարի օրակարգը

*1. ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՀԱՇՎԵՏՈՒ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ—ԶԵԿՈՒՑՈՂ՝ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿ.* Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ։

*2. ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ՎԵՐՍՏՈՒԳԻՉ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ՀԱՇՎԵՏՈՒ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ—ԶԵԿՈՒՑՈՂ՝ ՎԵՐՍՏՈՒԳԻՉ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ՆԱԽԱԳԱՀ ԸՆԿ.* Պ. Գ. ՄՈՍԿԱՏՈՎ։

*3. ՊԱՐՏԻԱՅԻ XIX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԴԻՐԵԿՏԻՎՆԵՐԸ ՍՍՌՄ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1951—1955 ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ՀԻՆԳԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ—ԶԵԿՈՒՑՈՂ՝ ՊԵՏՊԼԱՆԻ ՆԱԽԱԳԱՀ ԸՆԿ.* Մ. Զ. ՍԱԲՈՒՐՈՎ։

*4. ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՀԱՄԿ(Բ)Պ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ—ԶԵԿՈՒՑՈՂ՝ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿ.* Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ։

*5. ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ՕՐԳԱՆՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ։*

## Համագումարի ներկայացուցչության նորման և դելեգատների ընտրությունների կարգը

*1) ՄԵԿ ԴԵԼԵԳԱՏ ՎՃՌԱԿԱՆ ՁԱՅՆՈՎ ՊԱՐՏԻԱՅԻ 5000 ԱՆԴԱՄԻՑ։*

*2) ՄԵԿ ԴԵԼԵԳԱՏ ԽՈՐՀՐԴԱԿՑԱԿԱՆ ՁԱՅՆՈՎ ՊԱՐՏԻԱՅԻ ԱՆԴԱՄՈՒԹՅԱՆ 5000 ԹԵԿՆԱԾՈՒԻՑ։*

*3) ՊԱՐՏԻԱՅԻ XIX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԴԵԼԵԳԱՏՆԵՐԸ ԸՆՏՐՎՈՒՄ ԵՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՁԱՅՆ ՓԱԿ (ԳԱՂՏՆԻ) ՔՎԵԱՐԿՈՒԹՅԱՄԲ։*

*4) ՌՍՖՍՌ- ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՑ ԴԵԼԵԳԱՏՆԵՐՆ ԸՆՏՐՎՈՒՄ ԵՆ ՄԱՐԶԵՐԻ, ԵՐԿՐԱՄԱՍԵՐԻ ԵՎ ԱՎՏՈՆՈՄ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԵՆՑԻԱՆԵՐՈՒՄ։ ՄՅՈՒՍ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐՈՒՄ ԴԵԼԵԳԱՏՆԵՐՆ ԸՆՏՐՎՈՒՄ ԵՆ ՄԱՐԶԱՅԻՆ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԵՆՑԻԱՆԵՐՈՒՄ ԿԱՄ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ԿՈՄՊԱՐՏԻԱՆԵՐԻ ՀԱՄԱԳՈՒՄԱՐՆԵՐՈՒՄ՝ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ԿՈՄՊԱՐՏԻԱՆԵՐԻ ԿԵՆՏԿՈՄՆԵՐԻ ՀԱՅԵՑՈՂՈՒԹՅԱՄԲ։*

*5) ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ, ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ԵՎ ՊԵՏԱԿԱՆ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅԱՆ, ՍԱՀՄԱՆԱՊԱՀ ԶՈՐԱՄԱՍԵՐԻ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԵՋ ՄՏՆՈՂ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ ՊԱՐՏԻԱՅԻ XIX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԴԵԼԵԳԱՏՆԵՐ ԵՆ ԸՆՏՐՈՒՄ ՄՆԱՑԱԾ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԵՏ ՄԻԱՍԻՆ ՄԱՐԶԱՅԻՆ, ԵՐԿՐԱՄԱՍԱՅԻՆ ՊԱՐՏԿՈՆՖԵՐԵՆՑԻԱՆԵՐՈՒՄ ԿԱՄ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ԿՈՄՊԱՐՏԻԱՆԵՐԻ ՀԱՄԱԳՈՒՄԱՐՆԵՐՈՒՄ։*

*ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՐՏՈՒՂԱՐ*

**Ի. ՍՏԱԼԻՆ**

# ԽՈՍՔ ԱՌԱՋԻՆ ԴԱՍԱՐԱՆՑԻՆԵՐԻՆ

*Յուրա Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ*

Նորից հնչեց ուսումնական տարվա առաջին զանգը: Մեր երկրի միլիոնավոր երեխաներ ամառվա հանգստից հետո կազդուրված ու կայտառ վերադարձան դպրոց: Նրանց հետ առաջին անգամ դասարան մտան առաջին դասարանցիները, որոնց համար դպրոցը մի նոր, հետաքրքիր աշխարհ է: Սովետական դպրոցն այդ նորեկներին կօգնի, որպեսզի նրանք հարուստ գիտելիքներ ձեռք բերեն, ձևավորվեն, որպես կոմունիզմի ապագա կառուցողներ: Դրանք կլինեն համառ աշխատանքի, անի, առաջընթացի երջանիկ տարիներ: Այն ճանապարհը, որ անցնելու են մեր երեխաները դպրոցում, արդեն անցել են այսօրվա տասներորդ դասարանցիները: Մեր ամսագրում տպագրում ենք այն խորհուրդներն ու ցանկությունները, որ ուղղում են առաջին դասարանցիներին իրենց ավագ ընկերները՝ տասներորդ դասարանի աշակերտները:

## ԲԱՐԻ ԳԱԼՈՒՍՏ

*Երջանիկ օր է սեպտեմբերի մեկը, անմոռանալի օր: Բոլոր աշակերտներն այդ օրը վերադառնում են հարազատ դպրոց: Երեք ամսվա ընդմիջումից հետո անչափ քաղցր ու հաճելի է նորից լսել դպրոցի զանգի ղողանջը: Բայց ձեզ համար, սիրելի առաջին դասարանցիներ, այդ ղողանջը առանձին նշանակություն կունենա: Այն կմնա ձեր հիշողության մեջ, միշտ կհնչի ձեր ականջներում:*

*1943 թվականի սեպտեմբերի մեկին ես նույն ապրումներն ունեի: Այն ժամանակ մեր Հայրենիքը պատերազմ էր մղում գերմանական ֆաշիզմի դեմ: Ծանր ժամանակներ էին մեր երկրի համար: Մեր ծնողներից շատերը գտնվում էին ռազմաճակատում, բայց թիկունքում գործում էին դպրոցները:*



Ալինա Օխուզյանը զրուցում է առաջին դասարանցիների հետ:

Ինչպիսի՜ հրճվանք ես զգացի, երբ նստեցի առաջին դասին... Դասամիջոցին, ես ամոթխած կանգնած էի դպրոցի բակում, իսկ բարձր դասարանցիները ուրախ ու աշխույժ խաղում էին, դասերից հետո էլ մեծ-մեծ գրքեր կարդում։ Այն ժամանակ ինձ թվաց, թե դժվար է հասնել նրանց աստիճանին. բայց միայն սկզբում էր այդպես թվում։

Ահա ես տասներորդ դասարանում եմ։ Ավարտական դասարանում։ Արագությամբ թռան ինը տարին։ Ինչքա՜ն բան եմ սովորել ես դպրոցում, ինչքա՜ն շատ գիտելիքներ են տվել ինձ իմ սիրելի ուսուցիչները։

Սակայն չկարծեք, թե սովորելը, մանավանդ լավ սովորելը, հեշտ բան է. ո՛չ։ Շատ դժվարություններ կլինեն, որ պետք է հաղթահարել։ Չպետք է հուսահատվել, սկսած գործը կիսատ թողնել, կամ մնալ ուրիշի հույսին։ Հաճախ պետք կլինի թվաբանության մի խնդիր լուծելու համար ժամեր կորցնել։ Առաջին դժվարությունից մի՛ վախեցեք և կրկին կարդացեք այն, ինչ չեք հասկացել, կամ կրկին լուծեք չլուծված խնդիրը։

Իմ փոքրիկ ընկերնե՛ր, եղե՛ք կարգապահ, լսեցե՛ք ձեր ուսուցիչներին, եղեք աշխատասեր ու համառ։ Դուք բոլորդ էլ կհասնեք տասներորդ դասարան, կգնաք ինստիտուտ, կավարտեք և կդառնաք կոմունիզմ կառուցող սովետական քաղաքացիներ։

Բարի գալուստ, սիրելի ընկերնե՛ր.

ԱԼԻՆԱ ՕՔՍՈՒԶՅԱՆ

(Ն. Կ. Կրուպսկայայի անվան միջնակարգ դպրոցի 10-րդ դասարանի աշակերտուհի)

# ՍԻՐԵՑԵՔ ԳԻՐՔԸ

Սիրելի փոքրիկնե՛ր, այս տարի դուք առաջին անգամ եկաք դպրոց։ Դուք ոտք դրեցիք այն սանդուղքի առաջին աստիճանին, որը տանում է դեպի գիտության բարձունքները։

Ինչպես շատ-շատերը, ես էլ եղել եմ ձեր վիճակում, զգացել եմ առաջին դասի մեծ հրճվանքը։ Թեև ես այժմ գտնվում եմ տասներորդ դասարանում, միշտ մի առանձին սիրով եմ հիշում առաջին դասարանը։ Ես լավ եմ հիշում, թե ինչպես դողացող ձեռքով գրատախտակի վրա գրեցի առաջին տառը, ինչպես գրեցի առաջին բառը։

Այժմ ես 10-րդ դասարանում եմ։ Երբ գարնանը դուք կփոխադրվեք երկրորդ դասարան, ես հասունության քննություններ կհանձնեմ, կավարտեմ դպրոցը և կգնամ սովորելու բարձրագույն դպրոցում։

Հիմա ես ավելի հաճախ եմ մտածում իմ ուսուցիչների մասին, որոնք ամեն ինչ արեցին, որպեսզի ես և իմ ընկերները դառնանք կրթված մարդիկ, և անհուն երախտագիտությամբ է լցվում հոգիս նրանց նկատմամբ։

Իսկ ինչքա՜ն շատ բան ստացա ես գրքերից։ Նրանք հարստացրին իմ գիտելիքները։ Գրքերի միջոցով ես ծանոթացա Նիկոլայ Օստրովսկու հերոսական կյանքին, երիտասարդ գվարդիականներին, ռուս ճանապարհորդների ու գիտնականների կյանքին։ Գրքերը զարգացրին իմ լեզուն, լայնացրին իմ մտահորիզոնը։ Այժմ ես զգում եմ, որ այդ տարիների ընթացքում ձեռք բերած գիտելիքների համար ես պարտական եմ գլխավորապես գրքերին։

Դրա համար էլ ես ասում եմ ձեզ՝ սիրեցե՛ք գիրքը։ Կարդացեք միայն ուսուցիչների և ծնողների խորհրդով։ Իմացեք, որ դասագրքերից բացի շատ գրքեր կան, որոնք կօգնեն ձեզ ավելի խորացնելու դպրոցում ձեռք բերած գիտելիքները։

Սիրեցե՛ք գիրքը։ Ճիշտ է ասված, որ գիրքը մեր բարեկամն է. դուք այդ շուտով կզգաք։

Շնորհավորում եմ ձեզ դպրոց ընդունվելու առթիվ և հաջողություններ եմ ցանկանում հետագա բոլոր տարիների ուսման ընթացքում։

ՓԱՅԼԱ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

(Ախուրյանի շրջանի Ախուրիկ գյուղի միջնակարգ դպրոցի 10-րդ դասարանի աշակերտուհի)

# ԱՆՍՈՎՈՐ ՀԱՆԴԻՊՈՒՄ

Մ. ՕՎՉԻՆՆԻԿՈՎ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

Սեղան նստելով, Բագրատը, ասես ի միջի այլոց, մորն ասաց.

— Գիշերը մեզ մոտ թունելների միացում է. առավոտը չսպասես։

Օնիկը վեր թռավ տեղից.

— Միացո՞ւմ… ինձ կտանե՞ս քեզ հետ։

Բագրատը նայեց կրտսեր եղբորը և ժպտաց.

— Իմ խոսքը՝ օրենք է, ասել եմ՝ կտանեմ։

— Ա՛յդ էր պակաս,— առարկեց մայրը, ապա դիմելով ամուսնուն, ասաց.— լսո՞ւմ ես. գիշերով երեխային հանքախորշ է քաշ տալու։

Ժպիտը սև բեղերի տակ թաքցնելով, հայրը ձեռքը մեկնեց լավաշին։

— Դե՛, որ խոսք է տվել, թող տանի…

Օնիկի հայրն ու ավագ եղբայրը աշխատում էին Գյումուշգէսի շինարարական տեղամասերից մեկում։ Հայրը հյուսն էր, իսկ Բագրատը ստորերկրյա ջրանցքի հորատողների կոմերիտական-երիտասարդական բրիգադի հայտնի բրիգադիրը։ Այդ բրիգադի փառավոր գործերի մասին թերթերում հաճախ էին գրում։ Նա ամենից արագ էր շարժվում հորատողների մյուս բրիգադին՝ կոմերիտական Ալի Ջեյնալովի բրիգադին ընդառաջ։ Բագրատն այդ բրիգադիրի հետ էր մրցում։ Տեղամասում և ամբողջ շինարարության մեջ նրանց հանդիպմանը սպասում էին բոլորը։ Բայց երեխաներին խստիվ արգելված էր մոտենալ լեռան սև երախին, որի միջից մերթ ընդ մերթ զնգոցով դուրս էր թռչում սև բզեզի նման էլեկտրատարը և իր ետևից քաշ տալիս գորշ քարերով լեփլեցուն մետաղյա վագոնիկների երկար շարքը։

Երեխաները շրջանցում էին տեղամասը կամ ղառիթափին կանգնած նայում էին ցած, դիտում նեղ կիրճում աշխատող մարդկանց։

Օնիկը վաղուց էր երազում լինել լեռան մեջ։ Եվ ահա նա ամենաառաջինը կգնա եղբոր հետ հանքախորշ։ Կգնա ոչ թե նայելու սովորական մի աշխատանք, այլ վկա կլինի երկու մրցող բրիգադների հանդիպմանը։

Օնիկն անհամբերությունից այրվում էր։ Նա ուզում էր շուտ տեսնել ընկերներին և նրանց հայտնել, որ ինքը գիշերը գնալու է թունելների միացումը տեսնելու։ Շտապ ճաշելով նա տեղից վեր կացավ և ուզում էր դուրս գնալ, բայց Բագրատը նրան պահեց։

— Ահա թե ինչ. միացումը կլինի առավոտ ժամը չորսին։ Միացումը պայթյուն է և ուրիշ ոչինչ։ Մենք բոլորս պայթյունի տեղից կհեռանանք և ինքներս էլ ոչինչ չենք տեսնի։

Օնիկը հասկացավ, որ Բագրատը որոշել է ետ պահել նրան միացմանը գնալու մտքից և ուշադրությունը լարեց։



— Ուրեմն, դու քո օղակով առավոտ ժամը յոթին կիջնես մեր աշխղեկի գրասենյակն ու կսպասես ինձ. ես կգամ՝ ձեզ կտանեմ,— բարեկամաբար վերջացրեց Բագրատը։

— Բա միացո՞ւմը,— տագնապով հարցրեց Օնիկը։

— Կգնանք հանքախորշ և ես ամեն ինչ ցույց կտամ ձեզ։

— Ուրեմն գիշերն ինձ չե՞ս տանի,— բառերը դժվարությամբ արտասանելով հարցրեց Օնիկը։ Վիրավորանքը ճնշեց նրա կոկորդը և որպեսզի լաց չլինի, սեղմեց ատամները։

— Իրավունք չունեմ,— ափսոսանքով պատասխանեց Բագրատը և շոյեց եղբոր խուզած գլուխը։— Դե՛, ինքդ դատիր. ի՞նչ պետք է անես դու ժամը մեկից մինչև չորսը. պիտի խանգարես մեզ և ուրիշ ոչինչ. իսկ այնտեղ քնելու տեղ չկա, ախպեր ջան։

— Միևնույն է՝ կգամ...

— Դե՛, գիտես ինչ, դա արդեն պիոների վարմունք չի լինի,— խիստ տոնով ընդհատեց նրան Բագրատը.— Էլ ի՞նչ փոխարինող ես, որ ինձ չես լսում։

Մայրը սեղանն էր հավաքում։ Հայրը վերցրեց թերթերը և ակնոցները դնելով գնաց ննջարան։ Առանց մի բառ ասելու Օնիկը հագնվեց։

— Ո՞ւր ես գնում,— Բագրատի ձայնը նրան կանգնեցրեց շեմքին։

— Գնամ օղակս հավաքեմ ու ասեմ,— դժգոհ պատասխանեց Օնիկն ու դուրս գնաց։

Վրա էր հասնում երեկոն։ Երկնքով լողում էին ամպերը։ Գյուղի լայն փողոցով դեպի Օնիկն էր վազում նրա ընկերը՝ Գրիգորը։ Նա հագել էր հոր բաճկոնը։ Քամին ծածանում էր բաճկոնի փեշերը և Գրիգորը հեռվից նմանվում էր մի թռչունի, որ փորձում է թռչել։

— Այսօր միացում է,— վրա բերեց շնչակտուր Գրիգորը.— դու գնալո՞ւ ես։

Ի՞նչ կարող էր պատասխանել Օնիկը, երբ ընկերներին վաղուց էր ասել, որ եղբայրը խոստացել է նրան միացմանը տանել։

— Բա ո՞նց,— պատասխանեց նա, նույնիսկ չմտածելով, թե եղբայրն ինչ է պատվիրել իրեն։

— Երջանիկ մարդ ես,— հառաչեց Գրիգորը.— գոնե աչքի պոչով նայեի, թե ինչպես կհանդիպեն նրանք։

— Չի կարելի,— շփոթմունքը հաղթահարելով և առանց ընկերոջ թուխ դեմքին նայելու, ասաց Օնիկը.— ինքդ գիտես, թե ինչքան վտանգավոր է։

— Հա՜, իհարկե,— ցավով հաստատեց Գրիգորը.— Դու եղբորդ հետ ես գնում, իսկ նա այնտեղ՝ ոնց որ իրենց տանը։

Եվ հանկարծ աչքերը փայլեցնելով նա գլխով արեց.

— Դպրոցի ետևն այնպիսի՜ հրապարակ ենք սարքել... Ըհը՛... Գնանք՝ գնդակ խաղալու...

Եվ ընկերները վազեցին դպրոցի կողմը։

Օնիկը շուտ վերադարձավ տուն ու երեկոյան վաղ պառկեց քնելու։

Գիշերը ժամը մեկին Օնիկին արթնացրեց ժամացույցի զանգի ձայնը։ Վերմակի տակից նա լսում էր, թե ինչպես եղբայրը պատրաստվում է աշխատանքի գնալ։ Ահա նա հագնվեց, լվացվեց, հաց կերավ ու գլանակը վառելով մոտեցավ. ծածկեց եղբոր ոտքերը, լարեց արթնացնող ժամացույցը և լույսը հանգցնելով, կամացուկ դուրս գնաց։ Օնիկը վերմակի տակից գլուխը հանեց ու ականջ դրեց։ Ննջարանից լսվում էր հոր համաչափ խռմփոցը։ Լուսամուտով սենյակ էր թափանցել փողոցի լապտերի լույսը։ Օնիկը մոտեցավ սեղանին, վերցրեց ժամացույցը և թվատախտակը դարձրեց լույսի կողմը։ Այդ է, որ կա. Բագրատը զանգի սլաքը վեցի վրա է ուղղել, որ եղբայրը առավոտ վաղ արթնանա։ Օնիկը սլաքը դարձրեց երեքի վրա, ժամացույցն առավ ու սուզվեց վերմակի տակ։ Ժամացույցը նա խոթեց բարձի տակ ու սկսեց սպասել, թե երբ կանցնի պետք եղած ժամանակը։

Բարձի տակ համաչափ տկտկացնում էր արթնացուցիչը, բայց քունը նորից հաղթահարեց Օնիկին։ Մեկ էլ ահա նա սրտատրոփ վեր թռավ. բարձի տակ ճռճռում է արթնացուցիչի զանգը։ Տղան ձեռքը տարավ բարձի տակ ու փորձեց լռեցնել։ Սենյակում լռություն էր։ Օնիկը դուրս սողաց վերմակի տակից և առանց աղմուկի հագնվեց։ Ապա անձայն քայլերով մոտեցավ դռանը, կամացուկ ծածկեց այն և դուրս եկավ փողոց։

Մութ ու սառը երկնքում շողշողում էին խոշոր աստղերը։ Գյուղով մեկ բարձրաձայն կանչում էին աքաղաղները, իմաց տալով, որ շուտով լույսը կբացվի։

Օնիկն շտապում էր։ Ծանոթ ճանապարհով նա իջավ ձորաբերանի մոտ ու նայեց

ներքև։ Էլեկտրական մեծ ու վառ լամպերը և լուսարձակները լուսավորում էին տեղամասը։ Բետոնի գործարանի բարձր աշտարակների մոտ մարդիկ այս ու այն կողմ էին գնում. տնքում էր բետոնախառնիչ մեքենան։ Էլեկտրական եռացուցիչի կապտավուն բռնկումները մի ակնթարթ լուսավորեցին տեղամասի շենքերը, թունելի սև երախը, նեղ երկաթգիծը։ Բարձունքի վրայից լսվում էին կոմպրեսորների համաչափ հառաչանքներն ու ինչ-որ թշշոց։

Օնիկը մարդկանց հանդիպելուց խուսափում էր։ Նա իջավ ցած, անցավ քար ջարդող սարքավորման մոտով և պատին կպչելով, մտավ թունելի բարձր ու սառը կամարների տակ։ Աղոտ լույսով լուսավորված միջանցքը անսպասելի կերպով բաժանվեց երկու թևի։ Նեղ երկաթգծի ռելսերից դեպի ձախ էր գնում նաև մի ուրիշ ճյուղ։ Օնիկը կանգ առավ։ Ո՞ւր գնա՝ ձախ, թե՞ աջ։ Ականջ դրեց, երկու միջանցքի խորքից էլ խուլ աղմուկ էր լսվում։ Տղան որոշեց՝ պատահած մարդուն հարցնել, թե որտեղ է աշխատում Բագրատը։

Օնիկը թեքվեց դեպի ձախ ու քայլեց հանքախորշի բետոնապատ կամարների տակով. բայց քանի առաջ էր գնում, այնքան ավելի էր վախենում։ Դիմացից էլ ոչ ոք չէր գալիս, ոչ մի տեղ չէին վառվում ազդանշանող լամպիկները, որոնք կնախազգուշացնեին սպասվող պայթյունի մասին։ Ստորերկրյա միջանցքը թեքվում էր դեպի աջ և նորից բաժանվում էր երկու ճյուղի. ձախ կողմինը լայն էր ու բետոնապատ, իսկ աջ կողմինը՝ նեղ էր ու ատամնավոր քարե պատերով։ Այդ ճյուղի խորքից վագոնիկների աղմուկ և մարդկանց ձայներ լսվեցին, բայց նույն րոպեին էլ ամեն ինչ լռեց։ Օնիկը մոռացավ վախը։ Նա ցանկանում էր մարդկանց շուտ հանդիպել։ Վազելով մտավ նեղ հանքախորշն ու եկավ հասավ մի ընդարձակ ու լայն բետոնապատ միջանցքի։ Կանգ առավ. ականջ դրեց։ Լռություն է. ոչ մի ձայն չի լսվում։ Մի՞թե այստեղ միշտ այսպիսի լռություն է լինում։ Իհարկե։ Չէ՞ որ վերևը երկու կամ երեք հարյուր մետր հաստություն ունեցող բազալտն է…

Օնիկը գնաց դեպի ձախ։ Այդտեղ, կաթնագույն լույսի տակ, երևում էին ամրակի գերանները և տախտակե վերելքը, որի վրա ռելսեր էին դցված։ Տղան չգիտեր, որ բրիգադան վերջացնելով հորատումը, գործիքները հավաքել է, ետ է քշել ապառահավաք մեքենան, նստել է վագոնիկներն ու հեռացել հանքախորշից։ Օնիկը չգիտեր նաև, որ երիտասարդ պայթեցնող Կոլյա Աֆոնինը, որի հետ տեղամասի ակումբում Օնիկը մի անգամ շախմատ էր խաղացել, վառել է վերջին բիկֆորդյան լարն ու փախել։ Արդեն միջանցքի ոլորանում Կոլյան ետ նայեց այն տեղին, ուր հիմա պայթյուն պետք է լիներ. նայեց ու տեղում քարացավ։ Կողքի շերտանցքից դուրս եկավ մի տղա ու մի վայրկյան կանգ առնելուց հետո, հանգիստ գնաց



դեպի խորքը՝ պայթյունին ընդառաջ, որը մի քանի րոպե հետո ցնցելու էր ամբողջ լեռը։

— Ետ դարձի՜ր,— ինչքան ուժ ուներ կանչեց Աֆոնինը և թռավ տղայի ետևից։ Բայց տղան կամ չհասկացավ, կամ գոռոցից վախեցավ ու նետվեց առաջ, որտեղ հենց հիմա պետք է տեղի ունենար պայթյունը։

— Պառկի՛ր,— թոքերի ամբողջ ուժով գոռաց պայթեցնողը։

Հրամայական կանչը տղային մեխեց տե-



ղում. ապա, երբ հասկանալով ամեն ինչ, նա շուռ եկավ ու սլացավ Աֆոնինին ընդառաջ։ Հենց այդ պահին երեք պայթյուն, մեկը մյուսի ետևից, ասես պատռեցին օդը. կարծես ապառաժե սարը հօդս ցնդեց։ Աֆոնինն ընկավ ու պինդ կպավ գետնին։ Մանր քարերի կարկուտը թմբկահարեց ամրակի գերաններին։ Հենց որ Աֆոնինն ուզում էր վեր կենալ, որ գտնի տղային, մի քանի խուլ պայթյուններ նորից ցնցեցին լեռը։ Դա հանդիպակած հանքախորշից արձագանքում էր Ալի Զեյնալովի բրիգադը։ Պայթեցնում էին վերջին պատնեշը, որ նրանց բաժանում էր Բագրատի բրիգադից։ Ամեն ինչ վերջացած էր։

Աֆոնինը բարձրացրեց գլուխը։ Պայթուցիկ նյութի կծու գազը և բազալտի փոշին մշուշի պես ծածկեցին աղոտ լույսը։ Աֆոնինը շուրջը նայեց։ Նրանից հինգ քայլ հեռու, ռելսերի արանքում, երեսնիվայր պառկած էր տղան։ Նա ձեռքերով ծածկել էր գլուխը։ Երիտասարդ պայթեցնողը նետվեց դեպի նա և զգուշությամբ դարձնելով նրան մեջքի վրա, նայեց դեմքին։

— Օնի՞կ...— դուրս թռավ Աֆոնինի բերանից։

Տղան աչքերը բացեց ու ցրված հայացքով երկար նայեց իր վրա թեքված մարդուն։

— Վիրավորվե՞լ ես, ջարդվածքնե՞ր ունես,— տագնապով հարցրեց պայթեցնողը և ջղաձգորեն շոշափեց վախեցած Օնիկի ձեռքերն ու ոտքերը։

— Չէ՜... Ոչի՜նչ...— դժվարությամբ ասաց Օնիկն ու հենվելով Աֆոնինի ձեռքերին, ոտքի կանգնեց,— միայն թե գլո՜ւխս...

Կեպկայի տակից Օնիկի քունքին էր ծորում արյան թանձր շիթը։ Աֆոնինը հանեց նրա կեպկան ու նայեց գլխին։

— Քարն է քերծել, այդ ոչինչ, մեծանաս՝ կմոռանաս,— կատակեց Աֆոնինը և կրծքի գրպանից հանելով փաթեթը, պատռեց և դուրս քաշեց բինտն ու բամբակը։— Ի՞նչը քեզ քշեց այստեղ. տանը հո բան չի՞ պատահել։

— Միացմանն էի գալիս,— մեղավորի պես պատասխանեց Օնիկը։

— Եղբայրդ քեզ այնպիսի միացում ցույց կտա, որ ամբողջ կյանքումդ կհիշես։

— Առանց այդ էլ կհիշեմ,— թույլ ձայնով պատասխանեց Օնիկը։

Քարե միջանցքի խորքից լսվեց էլեկտրատարի զանգի զնգզնգոցն ու հուզված մարդկանց ձայներ։

— Գնա՛նք,— իր ետևից Օնիկին տանելով, շտապեցնում էր Աֆոնինը.— տեսնենք միացա՞ն։

Սուր քարերի կույտերի վրայով նրանք բարձրացան վերին գոգավորության կողմն ու մի փոքր անցք տեսան։ Անցքի մյուս կողմում երևում էր լամպիկների աղոտ առկայծումով լուսավորված հանդիպակած լայն միջանցքը։ Գետի նոր ճանապարհը բաց էր արդեն։

— Ուռա՜-ա՜-ա՜-...— ձեռքերը թափահարելով ցնծալից բացագանչեց Աֆոնինը։

Հանդիպակած հանքախորշից վազում էին Ալի Զեյնալովի բրիգադի տղաները։ Նրանք քարերի վրայով մագլցում էին դեպի նեղ անցքը, խցկվում նրա մեջ և բարձրաձայն

«ուռա՜» կանչելով գրկում էին Աֆոնինին, սեղմում էին Բագրատի բրիգադի տղաների ձեռքերը, շնորհավորում էին միմյանց աշխատանքի հաջող ավարտման, միացման առթիվ:

Եվ այդ ուրախալի րոպեներին ոչ որ ուշադրություն չէր դարձնում տասներկու տարեկան Օնիկի վրա, որը մի կողմ կանգնած՝ լուռ դիտում էր քարե սարի խորքում հանդիպած մարդկանց ցնծությունը:

Դիտում էր նա և մտածում, թե ինչպիսի նախատինքներ կստանա ինքը եղբորից, որին չլսեց և ժամանակից շուտ եկավ հանքախորշ:

# ՄԵՐ ՆՈՒՆԻԿԸ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Այսօր մեկն է
Սեպտեմբերի,
Ուրախ օրը
Մանուկների.
Հանդեսի են
Գնում կարծես՝
Դեպի դպրոց,
Մանկապարտեզ:



Մեր Նունիկն էլ
Ժիր, աչքաբաց,
Մի փունջ ծաղիկ
Ձեռքում պահած,
Կարմիր, փայլուն
Կոշիկ հագել,
Մայրիկի հետ
Դուրս է եկել:
Ահա հասան
Մանկապարտեզ,
Լայն դարպասից
Գնացին ներս.
Դաստիարակը
Ջերմ, սրտագին
Դիմավորեց
Մեր Նունիկին:
— Տե՛ս, Նունի՛կ ջան,
Լաց չլինես,
Մաքուր ու լավ
Կպահես քեզ,—
Ասաց մայրը
Մեր Նունիկին,
Գնաց գործի
Ժամանակին:
Մեր Նունիկը
Տխրեց մի պահ,
Ո՞ւմ հետ խոսի,
Կամ ո՞ւր գնա.
Քիչ էր մնում
Որ լաց լիներ.
Չէ՞ որ այստեղ
Ծանոթ չուներ:
Մանուկները
Այս որ տեսան,
Ամեն կողմից
Վրա հասան:
— Նունի՛կ, արի
Խաղանք գնդակ:
— Նունի՛կ, արի
Շինենք տնակ:
— Նունի՛կ, արի
Թիթեռ բռնենք,
— Նունի՛կ, արի
Երգենք, պարենք:
Նունիկն անչափ
Ուրախացավ,
Կարծես քնից
Նոր արթնացավ:
Բոլորն իսկույն
Ընկերացան,
Ու բակով մեկ
Իրար անցան:
Մայրը եկավ
Աշխատանքից.
— Նունի՛կ, Նունի՛կ,—
Կանչեց բակից:
— Ծաղիկներ եմ
Ջրում, մամա՛,
Քիչ սպասիր՝
Կգամ հիմա...
Այսպես ուրախ,
Այսպես խնդուն,
Մայր ու աղջիկ
Գնացին տուն:
Մեր Նունիկը
Քնից առաջ
Իր մայրիկին
Այսպես ասաց.



— Տե՜ս, մայրի՛կ ջան,
Շուտ կզարթնես,
Որ ինձ տանես
Մանկապարտեզ:

# ԳՐԱՋԸ

Գ. ՍԵՎՈՒՆՑ

Նկ. Հ. ԺԱՄԱԳՈՐԾՅԱՆԻ

Շավարշն ու Սուրենը դաշտից էին վերադառնում: Մինչև գյուղը դեռ բավական ճանապարհ կար:

Արդեն կեսօր էր ու տոթ: Արևի կիզիչ ճառագայթներից պատսպարվելու տեղ չկար: Ճանապարհի երկարությամբ տնկած մատղաշ ծառերից ոչ մեկը դեռ ստվեր չէր գցում:

Դաշտերում երկար թափառելուց տղաները հոգնել էին: Հանգստանալու համար նրստեցին մի չեչոտ, մեծ քարի վրա: Մի պահ նստելուց հետո Սուրենը բռնեց մոտ գտնվող բարդու հազիվ մի մետր բարձրություն ունեցող տնկին, օրորեց այն:

— Մենք էլ պետք է ասենք՝ ծառ տնկեցինք,— խոսեց նա,— մի փոքրիկ ստվեր չունի, որ մարդ գլուխը թաքցնի արևից:

— Թո՛ղ, թո՛ղ,— բարկացավ Շավարշը.— այդպես որ անես, քո գլխի համար երբեք ստվեր չի լինի:

— Ինչո՞ւ չի լինի:

— Դեռ հարցնում է՝ ինչո՞ւ,— հեգնեց Շավարշը:— Չե՞ս հասկանում: Մատղաշ տնկիների հետ պետք է խնամքով վարվել: Եթե բոլորս քեզ նման վարվենք՝ կփչանան:

— Միևնույն է, բարդի ծառը կարգին ստվեր չի գցում:

— Շատ լավ էլ գցում է: Էվկալիպտ է՞, որ բոլորովին ստվեր չգցի:

Սուրենը դարձավ, հարցական նայեց ընկերոջ լուրթ, հեգնորեն ժպտացող աչքերին:

— Ինչ ասացի՞ր, էլկաֆի՞լտ:

— Ո՜չ,— ուրախ ծիծաղեց Շավարշը,— ասացի՝ էվկալիպտ: Լսե՞լ ես այդպիսի ծառի անուն:

Սուրենը մեկ ուզում էր ստել, ասել, որ ինքը լսել է այդ ծառի անունը, բայց տեսնելով, թե ինչպիսի սուր հայացքով է նայում իրեն Շավարշը, խոստովանեց.

— Ո՛չ, չեմ լսել:

— Ա՛յ, հենց էվկալիպտն է, որ ստվեր չի գցում...

— Սուտ է,— բացագանչեց Սուրենը,— ծառն ի՞նչպես կարող է ստվեր չգցել:

— Սո՞ւտ է,— արի՛ գրազ գանք,—ասաց Շավարշը, ձեռքն առաջ պարզելով:

— Ո՛չ, նախ ասա՝ դու որտեղի՞ց գիտես այդ:

— Քո ի՞նչ գործն է: Ես ասում եմ, որ էվկալիպտն ստվեր չի գցում: Չե՞ս հավատում, արի՛ գրազ գանք:

— Ապակի է, ի՞նչ է,— հեգնեց Սուրենը,— որ ստվեր չի գցում:

— Ո՛չ, ապակի չէ, բայց ստվեր չի գըցում, որովհետև նրա տերևներն արևի կողմն են թեքվում ոչ թե իրենց լայնքով, այլ կողով:

— Օ՜յ, օ՜յ, ստերիդ տոպրակը բաց արա...

— Բոլորովին չեմ ստում,— հանգիստ պատասխանեց Շավարշը և իր միտքն ավելի պարզելու համար կողքի թփից մի տերև պոկեց, շարունակեց բացատրել.— Տե՛ս. տերևն ստվեր է տալիս, երբ արևին է նայում, ահա այսպես՝ իր լայնքով: Չէ՞: Իսկ երբ դանակի պես՝ սուր կողով, ուղղված է արևի կողմը, ի՞նչ ստվեր կարող է տալ. ոչ մի ստվեր: Էվկալիպտի տերևներն այսպես, սուր դանակների պես են նայում արևին և այդ իսկ պատճառով ստվեր չեն գցում:

— Իսկ այդ ծառի բարձրությունն ի՞նչքան է,— դարձյալ զգալի թերահավատությամբ հարցրեց Սուրենը:

Շավարշը մի պահ մտածեց, աշխատելով մի այնպիսի բան հիշել, որի բարձրությունը կարելի լիներ համեմատել էվկալիպտի բարձրության հետ, բայց, ըստ երևույթին, այդպիսի բան չգտնելով, միայն ասաց.

— Կան էվկալիպտներ, որոնց բարձրու-

*թյունը հարյուր հիսուն հինգ մետրի է հասնում, իսկ բնի լայնքը՝ երեսուն մետրի։*

*Այժմ Սուրենը զարմանքից աչքերը չռել, ընկերոջն էր նայում։*

*Տեսնելով Սուրենի զարմանքը, Շավարշը պատմեց այն ամենը, ինչ վերջերս կարդացած գրքից հիշում էր էվկալիպտի մասին։ Նրա պատմածից Սուրենն իմացավ, որ էվկալիպտ վիթխարի ծառի հայրենիքը արևադարձային երկրներն են և, մասնավորապես, Ավստրալիան։ Էվկալիպտը չտեսնված քանակությամբ ջուր է գոլորշիացնում։ Նրա արմատները խորը թաղվում են հողի մեջ, ծծում ընդերքի ջուրը, մղում դեպի բարձր երկնքում գտնվող կատարները և տերևների միջոցով գոլորշիացնում։ Էվկալիպտի մի հեկտար անտառը, այդպիսով, տարեկան մեկ միլիոն դույլ ջուր է գոլորշիացնում։ Նկատելով էվկալիպտի այդ հատկությունը, մարդիկ սկսել են այն օգտագործել ճահիճները չորացնելու համար։ Այդպես են վարվել նաև մեզ մոտ՝ Սովետական Միությունում։ Արևմտյան Վրաստանի մարզերում՝ Աբխազիայում, Աջարստանում, Կոլխիդայում ճահճուտներ շատ կային։ Տասնյակ տարիներ մարդիկ տառապում էին մալարիայից։ Այդտեղ սկսեցին էվկալիպտի ծառեր տնկել և շուտով՝ ընդամենը վեց տարուց հետո, այդ ճահիճները չորացան։ Այժմ Սովետական Միության տարբեր տեղերում էվկալիպտի քառասուն միլիոն ծառ են տնկել։ Այնտեղ ուր բնական պայմանները նպաստում են, էվկալիպտը շատ արագ է աճում։ Առաջին տարվա ընթացքում նրա բարձրությունը հասնում է երկու-երեք մետրի, հինգ տարվա ընթացքում՝ 12 մետրի, իսկ երեսունհինգ տարուց հետո էվկալիպտն ավելի մեծ է լինում, քան երկու հարյուր տարեկան կաղնին։*

*Էվկալիպտը թանկարժեք փայտ ունի։ Այն ավելի ամուր է, քան կաղնին կամ ընկուզենին, դիմացկուն ու ծանր է, ինչպես երկաթը։ Նրա փայտը ութսուն տարի մնում է ջրում ու չի փտում։ Նրանից պատրաստում են նավեր, վագոններ, կահույք։ Հետաքրքիր այդ ծառը մի տեսակի խեժ է տալիս, որը կոչվում է «կինո»։ Մարդիկ այն եփում են ու թանաք պատրաստում։ Իսկ էվկալիպտի տերևները իրենց մեջ եթերային յուղ են պարունակում, որն ուրիշ նյութերի հետ միասին օգտագործվում է տարբեր օծանելիքներ, օճառ և օդեկոլոն պատրաստելու համար։*

*Վերջացնելով իր պատմությունն էվկալիպտի մասին, Շավարշը ժպտադեմ նայեց իր ընկերոջը և ավելացրեց.*

*— Դեռ մի տեսակի ծառ էլ կա, որ կոչվում է հնդկական ֆիկուս։ Այդ ծառի ստվերը երեք հարյուր մետր տարածություն է ծածկում։*

*— Երեք հարյուր մե՞տր,— տեղից վեր թռավ Սուրենը,— դու գժվե՞լ ես։ Դա համարյա կես կիլոմետր է։*

*— Այո՛, մի՛ զարմանա։ Նրա բնի շրջագիծը վաթսուն քայլ է։ Հնդկական ֆիկուսը մոտ երեք հազար ճյուղ է ունենում։ Ճյուղերը մեր ծառերի ճյուղերի նման չեն։ Նրանց մի մասը ծառերից կախվում է, մրտնում հողի մեջ և նոր բներ կազմում։ Օդում մնացած ճյուղերը երկու խուփի մեծությամբ, վահանաձև տերևներ են ունենում։ Ֆիկուսի ստվերում մի ամբողջ բանակ կարող է պատըսպարվել արևից։*



*— Բանա՞կ։ Փչում ես։*

*Շավարշն ուրախ ծիծաղեց։*

*— Բոլորովին չեմ փչում։ Ես իմ կարդացածն եմ պատմում քեզ։*

— Իսկ որտե՞ղ ես կարդացել։
— Գրքում։
— Այդպիսի գիրք չկա։
— Ի՞նչպես չկա, մեր գյուղի գրադարանից եմ վերցրել։
— Մեր գյուղի գրադարանում այդպիսի գիրք չկա,— պնդեց Սուրենը։— Հիմա կարող եմ գրաղ գալ։
Շավարշն իսկույն բռնեց Սուրենի ձեռքը։
— Արի՛։ Ի՞նչով գրաղ գանք։



— Ինչով կուզես։
— Լավ։
Տղաները ոտքի ելան և շարունակեցին իրենց ճանապարհը։
Այժմ նրանք ավելի արագ էին քայլում, քան մինչև գրաղ գալը։ Շավարշը բնավ չէր կասկածում, որ գրաղն ինքն է տարել։ Մի շաբաթ չկար, ինչ նա «Բույսերի աշխարհում» գիրքը կարդալուց հետո տարել, ետ էր տվել գրադարանին։ Իսկ Սուրենը գնում էր և մտածում, որ Շավարշն իր պատմածները լսել է մեկն ու մեկից։ Գյուղում նրանք հարևաններ էին։ Ինքը երբեմն օրական մի քանի անգամ լինում էր Շավարշենց տանը, տեսնում, թե ինչ գրքեր է կարդում նա։ Այդ ի՞նչպես է պատահել, որ նա այդպիսի հետաքրքիր գիրք է բերել, կարդացել, իսկ ինքը չի իմացել և կամ՝ ի՞նչպես է եղել, որ գրադարանապետուհի ընկեր Արաքսյան իրեն՝ Սուրենին, այդ գիրքը չի առաջարկել։
Գյուղ հասնելուն պես նրանք տուն չգնացին։ Այդ ժամին գրադարանը բաց էր և իսկույն կարելի էր ստուգել, թե գրաղն ով է տանուլ տվել։
Գրադարանապետուհի Արաքսյան շրջապատված էր մի խումբ աշակերտուհիներով։ Աղջիկներից մեկը ոգևորությամբ պատմում էր «Պատմվածք իսկական մարդու մասին» վիպակի բովանդակությունը։ Նա նույնիսկ ուշադրություն չդարձրեց ներս եկողների վրա, բայց գրադարանապետուհին նրան պահեց.
— Սպասի՛ր, Արևի՛կ, տղաներն ինչ-որ հուզված են երևում։ Ի՞նչ է պատահել, Շավարշ։
Շավարշը, ճակատի քրտինքը սրբելով, պատմեց իր և Սուրենի գրաղի մասին։
— Սուրիկն ասում է, որ մեր գրադարանում այդպիսի գիրք չկա,— վերջացրեց նա։
— Սուրի՞կն է ասում,— զարմացավ գրադարանապետուհին։— Չի կարող պատահել։ Դու իսկապե՞ս գրաղ ես եկել, Սուրի՛կ։
— Այո՛։
— Ինչո՞ւ։ Չէ՞ որ այդ գիրքը դու ես տարել ես կարդալու։
— Ե՞ս...,— շփոթվեց Սուրենը,— ես այդպիսի գիրք չեմ տարել...
— Ի՞նչպես չես տարել։ Ապա մի սպասի՛ր։
Գրադարանապետուհին գտավ Սուրենի քարտը, նայեց.
— Տարել ես և ուղիղ մի շաբաթ պահել քեզ մոտ։ Ահա այստեղ նշված է։
Աղջիկները ծիծաղեցին, իսկ Սուրենը ցանկացավ հակաճառել.
— Ո՞չ...— կմկմաց նա։
Գրադարանապետուհին դարակներից մեկից հանեց «Բույսերի աշխարհում» գիրքը, դրեց Սուրենի առաջ։
— Դու այս գիրքը տուն չե՞ս տարել։
Սուրենը առանց այն էլ շիկնած էր, իսկ այժմ կարմրեց կակաչի պես։ «Բույսերի աշխարհում» գիրքը նա վերցրել էր գրադարանից և տանն ընդամենը մի քանի տող կարդալով, թողել այն, կարծելով, թե հետաքրքիր չէ։ Մի շաբաթ հետո նա գիրքը

*վերադարձրել էր և նրա մասին մոռացել ճիշտ այնպես, ինչպես միայն կարելի է մոռանալ փողոցում հանդիպած անծանոթ մարդուն: Այժմ գիրքը տեսնելուն պես, նա ամոթից գլուխը կախեց:*

*— Դե՛, ասա տեսնեմ, Սուրե՛ն,— իր հարցը կրկնեց գրադարանապետուհին,— այս գիրքը դու տուն տարե՞լ ես, թե չէ:*

*— Տարել եմ,— վերջապես խոստովանեց Սուրենը, բայց մինչև վերջ չեմ կարդացել...*

*— Ա՜, մինչև վերջ չե՞ս կարդացել: Ա՛յ, դրա համար էլ գրազը տանուլ ես տվել: Երբեք սկսածդ գործը կիսատ մի՛ թողնիր,— խրատեց գրադարանապետուհին:— Հիմա կուզե՞ս տամ, տար կարդա:*

*Ամոթից Սուրենը գլուխը չէր բարձրացնում: Զգալով, որ բոլորն իրեն են նայում, նա կտրուկ շրջվեց և դուրս գնաց, դռների մեջ ասելով.*

*— Ես հետո կվերցնեմ:*

*Աղջիկներից մեկը նրա ետևից կանչեց.*

*— Գնա՛, գրազը բե՛ր:*

*Դրան հետևից ընդհանուր մի ծիծաղ:*

---

# ԲԵՐՔԱՀԱՎԱՔ

*ՌՈՒԲԵՆ ՂԱՐԻԲՅԱՆ*

*Նկ. Մ. ՍԵԴՐԱԿՅԱՆԻ*

— Նազի՛կ, Ռիմա՛, Աշո՛տ, Ավա՛գ,
Եկեք խաղանք «բերքահավաք»:
— Խաղա՛նք, խաղա՛նք,— ամեն կողմից
Լսվեց ուրախ աղմուկ ու ճիչ:
— Ես կլինեմ պահեստապետ,—
Ասաց Արան իսկույնևեթ:
— Դե՛, լռությո՛ւն, իսկ հիմա մենք
Բերքահավաքն սկսում ենք,
Ի՞նչ ես հանձնում,
Ընկեր Տիրան.
— Երեք տոննա
Շալախ ծիրան:
Եվ մի այդքան
Լավ, մեղրածոր
Միչուրինյան
Տանձ ու խնձոր:
— Ապրե՛ս, ապրե՛ս, արժե գովել,
Այգին հարուստ բերք է տվել.
Բարձր բերքի բրիգադա՛,
Դե՛, իհարկե, զուր խոսք չէ դա.
Բայց պետք է ջանք չխնայել
Այդ կոչումը ամուր պահել:
Իսկ դո՞ւ, Ռիմա՛,
— Ասեմ հիմա.
Մեր սարում շատ անձրև եկավ,
Սարը բավիչ կանաչ հագավ.
Հոտն արոտից իջնում էր ցած
Կուրծք անուշ կաթով լցրած:
Մենք այդ կաթը մշակելով
Ստացել ենք տոննաներով
Անքաշ պանիր,
Կարագ ու յուղ
Եվ հենց երեկ
Բերել ենք գյուղ:
— Շատ գեղեցիկ,
Իսկ դո՞ւ, Խորե՛ն:
— Հատիկ-հատիկ
Ընտիր ցորեն:
Մրցման կարգով պայքարել ենք,
Մեր պլանը կատարել ենք.
Բայց դեռ ունենք երեք-չորս կալ
Եվ կարող ենք էլի հաց տալ
Պետությանը մեր հարազատ:



— Ա՛յ, իսկական երիտասա՜րդ...
Իսկ դո՞ւ, Աշո՛տ։
— Լավ ծխախոտ։
— Իսկ դո՞ւ, Մուշե՛ղ։
— Ես՝ ճակնդեղ։
Ճակնդեղից, երկրի համար,
Պատրաստում են քաղցր շաքար։
Մեծին, փոքրին իրեն հերթին,
Աշակերտին թե վարպետին,
Հարկավոր է թեյ քաղցրահամ,
Իսկ ճակնդեղ՝ ես շատ կտամ։
— Իսկ դո՞ւ, Նազի՛կ,
Ոսկեմազիկ։
— Ես՝ արևշող
Քաղցր խաղող,
Ընկույզ, փշատ
Եվ ուրիշ շատ
Մրգեր առատ։
— Բավական է, ո՞ւր եք բերում,
Էլ տեղ չկա պահեստներում։

Այս հո բերք չէ, վարար մի գետ,—
Գոչեց Արան պահեստապետ,—



Բերքաբաշխում պետք է անեմ
Ցուցակ բերեք, որ բաժանեմ,—
Ասաց, փայտե իր ձին հեծավ,
Ասպանդակեց ու սլացավ...

# ՄՆԱՔ ԲԱՐՈՎ, ԸՆԿԵՐՆԵՐ

*ՄԵՀԹԻ ՀՈՒՍԵՅՆ*
(Ստալինյան մրցանակի լաուրեատ)

1

*«Թուրքմենը» գնում էր արագ, կռվելով ալիքների հետ։ Տախտակամածի վրա՝ հենված երկաթե բազրիքին, կանգնած էր Մեշադի-բեկը։*

*Լուսացավ։ Սակայն դեռ դժվար էր տարբերել հորիզոնի գիծը։ Շուրջը ամեն ինչ ներկված էր մի գույնով՝ ծովի գույնով։ Որտե՞ղ մնաց Բաքուն։ Ինչո՞ւ «Թուրքմենը» ուղղությունը փոխեց։*

*Դեռ երեկվանից Մեշադի-բեկի հոգին ծանրացած էր։ Նա արդեն երեք գիշեր էր, որ չէր քնել. հոգնածություն չէր զգում։ Հյուսիսից փչող թեթև քամին շոյում էր նրա մազերը։ Նա մռայլվեց, ավելի սուր նշմարվեցին ճակատի կնճիռները... Մի սարսափելի ենթադրություն առկայծեց նրա գիտակցության մեջ։ «Թուրքմենը» նրան և ընկերներին դեպի մահ է տանում...*

*Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ*

Մենք մահից ավելի ուժեղ ենք
Մ. ԳՈՐԿԻ

*Նայելով շոգենավի ետևում փրփրացող ջրին, նա մտքով սլացավ դեպի հայրենիք, որտեղ թողել էր հիվանդ կնոջը, պառավ մորը, երեխաներին, չասելով նրանց վերջին «մնաս բարովը»։ «Ո՞վ զոհվեց, ո՞վ կենդանի մնաց» դառնորեն մտածում էր նա։ «Բաքո՞ւ, Բաքո՜ւ։ Ինչո՞ւ ընկար թշնամիների ձեռքը։ Հարազա՜տ քաղաք, մինչև ե՞րբ դու պետք է արցունքներ թափես»։*

*... Նա շուռ եկավ։ Նրա կողքին նստած էր Ստեփան Շահումյանը։ Այդ մարդու դեմքին չկար ո՛չ հուսահատություն, ո՛չ անհանգստություն։ Նայելով նրան Մեշադի-բեկը իր տագնապի մասին էլ մոռացավ։ «Մենք միասին ենք» թեթևացած մտածեց նա...*

*Շահումյանին բռնել էին իր որդիների*

հետ միասին, և նրա դրությունը մյուսներից ավելի ծանր էր։ Կարո՞ղ էր արդյոք չցավել հայրը, որի աչքի առաջ պետք է զոհվեին այնպիսի որդիներ, ինչպիսին էին Սուրենը և Լևոնը։ Բայց Շահումյանը հոգեպես չէր ընկճվում։ Խեղդելով վիշտը, նա որդիներին արիության օրինակ էր տալիս։ Մեշադի-բեկը սիրում էր Սուրենին և Լևոնին, ինչպես իր հարազատ երեխաներին։



«Թող մենք ընկնենք, միայն թե նրա՛նք ապրեն» մտածեց Մեշադի-բեկը և ծանրորեն հառաչեց։

Շահումյանը վեր թռավ և հարցրեց.

— Ինչո՞ւ ես հառաչում, Մեշադի՛։ Տխրությունը քեզ չի սազում։

Սուրենը և Լևոնը քնքշորեն նայում էին իրենց հորը։ Մեշադի-բեկը դողդոջուն ձայնով ասաց.

— Ոչ, Ստեփա՛ն։ Ինձ հուզում է նրանց վիճակը... Չէ՞ որ մենք կռվել ենք հենց նրանց ապագայի համար։

Շահումյանը մտախոհ նայեց իր որդիներին։

— Իմ դյուցազնե՛ր, դուք մահվանը քաջությա՞մբ կդիմավորեք,— հարցրեց նա։

— Իհարկե, հայրի՛կ։ Ամոթ է, որ մարդը մահից վախենա։

Այդ խոսքերը Մեշադի-բեկի սիրտը ուրախությամբ լցրին։ Շահումյանը ժպտաց։ Նա հավատում էր, որ որդին այդ ասաց ոչ գեղեցիկ խոսքի համար։ Չնայած իր տարիքին, Լևոնը քաջաբար պաշտպանել էր կոմունան։ Զենքը ձեռքին նա մարտնչել էր ռազմաճակատի ամենավտանգավոր տեղերում, որտեղ ամեն մի րոպե կարող էր մահը վրա հասնել։ Հայրը ուրախանում էր որդու արիությամբ, իսկ որդին հպարտանում էր հորով։

Մի անգամ Ստեփանը Լևոնին նշանակեց պարենամթերքի մի վտանգավոր արշավախմբում, Մեշադի-բեկը սկսեց առարկել.

— Ախր, նա դեռ երեխա է, նրան այդպիսի գործի չի կարելի ուղարկել, Ստեփա՛ն։

— Ես նրան ինձանից ավելի շատ եմ սիրում,— վստահ պատասխանեց Շահումյանը,— բայց եթե գործը զոհեր է պահանջում, թող առաջին զոհը իմ որդին լինի...

Այժմ Լևոնի աչքերը տխուր էին, բայց մահվան սարսափը նրան խայտառակություն էր թվում։ Ամենից ավելի նրան անհանգստացնում էր հոր վիճակը։ Կարծես զգալով այդ, Ստեփանը ձեռքը դրեց նրա ուսին։

— Ոչինչ, որդի՛։ Մենք դեռ կապրե՛նք... Հանուն մարդկանց երջանկության պե՛տք է ապրենք...

Այդ պահին «Թուրքմենը» սկսեց թեքվել դեպի ձախ։

— Արդյոք նրանք չե՞ն պատրաստվում ջրասույզ անելու մեզ,—կատակեց Սուրենը։

«Թուրքմենը» հոգնած ուղևորի նման դանդաղ գնաց դեպի նավահանգիստ։

Մեշադի-բեկը առջևում տեսավ Կրասնովոդսկը։ Բոլոր ուղևորների աչքերը սևեռված էին դեպի այնտեղ։

Երբ շոգենավը մոտեցավ ափին, Մեշադի-բեկը նավահանգստում մի խիտ բազմություն նկատեց։ Մի րոպե հետո նա տեսավ, որ ափին կանգնած մարդիկ զինված էին։ Ուղևորները զարմացած էին, որ դեպի Սովետական Աստրախան ուղևորվող շոգենավը, հանկարծ ընկավ Կրասնովոդսկ, որը գտնվում էր Բաքվի կոմունայի դավաճանների՝ էսէռների ձեռքին։ Կոմիսարների համար դա նշանակում էր կրակից դուրս գալ բոցի մեջ ընկնել։

— Նայիր, Ստեփա՛ն,— ասաց Մեշադի-

բեկը, Շահումյանին ցույց տալով շոգենավին ուղղված թնդանոթները։

Շահումյանը վեր կացավ և որդիների հետ միասին մոտեցավ բազրիքին։ Վատ նախազգացումից ճմլվում էր նրա սիրտը...

— Էսեռներից միայն ա՛յդ էլ կարելի էր սպասել,— ասաց նա։

Մի քանի րոպե առաջ ծովափին նայող ուրախ ուղևորներին այժմ տիրեց տարակուսանքը և շփոթվածությունը։

Չմոտենալով նավամատույցին, «Թուրքմենը» խարիսխ ձգեց։ Նավահանգստից դեպի նավը սլացան երկու կատեր։ Նրանց կողերին խմբվել էին միլիցիոներներ և զինված թուրքմեններ։ Զենքերը փայլում էին սեպտեմբերյան արևի շողերի ներքո։ Երբ կատերները ընդհուպ մոտեցան շոգենավին, զինվորները բռնեցին նավից իջեցված նավասանդուղքը։ Սպան, որը զինվորներին կարգադրություն էր անում, բարձրացավ տախտակամած։

— Ովքեր զենք ունեն անմիջապես հանձնեն,— գոչեց նա։

Մեշադի-բեկը նայեց Շահումյանին, որ հանգիստ կանգնել էր մի կողմում։ Երկուսն էլ սպասում էին, թե ինչ կլինի հետո։ Սկսվեց խուզարկությունը։ Հուզված ուղևորները աչքները սպայից չէին կտրում։ Միայն նրանցից մեկի մոտ ատրճանակ հայտնաբերվեց։ Զինվորից ընդունելով խլված ատրճանակը, սպան ուշադիր զննեց այն, խոթեց գրպանը և հրամայեց կրկին խուզարկել բոլոր ուղևորներին։ Մեշադի-բեկը թուրքմեն զինվորին ադրբեջաներեն ասաց, որ բացի արդեն խլված ատրճանակից, շոգենավում ոչ մի զենք չկա։

— Ինչո՞ւ,— նմանվելով իր սպայի կոտրուկ տոնին, գոչեց զինվորը։

— Համարյա այս բոլոր մարդիկ հենց նոր են բանտից դուրս եկել,— հանգիստ պատասխանեց Մեշադի-բեկը։

Վերջացնելով երկրորդ խուզարկությունը, որը ոչ մի արդյունք չտվեց, սպան, դուրս գցելով կուրծքը, սկսեց քայլել տախտակամածի վրա, կարծես ինչ որ մեկին փնտրելով։ Այդ ժամանակ նա աշխատում էր դեմքին տալ սարսափելի արտահայտություն, բայց մարդիկ չէին վախենում և արհամարհանքով երես էին դարձնում նրանից...

Մեշադի-բեկը բավականությամբ նկատում էր, թե ինչպես ուղևորները արհամարհանքով երես էին դարձնում սպիտակգվարդիականից։ Կանգնելով տախտակամածի ծայրին սպան խռպոտ ձայնով գոչեց.

— Ցո՛ւյց տվեք կոմիսարներին, այլ կերպ ոչ մի մարդ ափ չի՛ թողնվի։

Ուղևորները նրա կողմը դարձրին տագնապած դեմքերը։ Մեշադի-բեկը նայեց Շահումյանին, որը ցասկոտ դիտում էր ափը։ Շահումյանը հասկանում էր, որ էսեռները հազիվ թե իրենց կենդանի թողնեն։ Մեշադի-բեկն էլ այդպես էր ենթադրում։ «Դավաճանությունը հատուկ է նրանց», մտածեց նա ատելությամբ լեցուն աչքերը չկտրելով ափից և թնդանոթներից, որոնք ուղղված էին դեպի շոգենավը։

— Տվե՛ք կոմիսարներին,— կրկնեց սպան, բայց ոչ ոք չարձագանքեց։

Սպան անցավ տախտակամածով և կանգնելով ուղևորների մի խմբի առջև, երրորդ անգամ ասաց.

— Տվե՛ք կոմիսարներին և դուք բոլորդ կազատվեք։

Լռություն...

—Տվե՛ք կոմիսարներին... Որտե՞ղ են կոմիսարները...

Մարդիկ լռում էին։ Բոլոր ուղևորները ճանաչում էին Բաքվի կոմիսարներին. բայց ոչ ոք չէր ուզում դավաճան լինել։

— Պարոննե՛ր,— նորից սկսեց սպան։— Մեր ստացած ճշգրիտ տեղեկություններով, Բաքվի կոմիսարները գտնվում են «Թուրքմեն» շոգենավի վրա։ Դուք իզուր եք համառում և ինձնից ժամանակ խլում։ Միևնույն է, մենք նրանց կբռնենք։

Ուղևորների բազմությունից անջատվեց մի մարդ։ Բոլորը շունչները պահած դիտում էին նրա ամեն մի շարժումը։ Լարված ուշադրությամբ նրան էր հետևում նաև Մեշադի-բեկը։ Շահումյանը կանգնել էր մի կողմ, Լևոնի կողքին։

— Դե, պարոննե՛ր, ես սպասում եմ,— անհամբերությամբ արտասանեց սպան։

Մարդն ընդհուպ մոտեցավ սպային։

— Ահա՛ Շահումյանը...

— Դավաճա՛ն,— լսվեց բազմության միջից։

Սեղմելով բռունցքները, Մեշադի-բեկը ատամների արանքից ասաց.

— Դավաճա՛ն...

Նավաստիները, կարմիր գվարդիականները, կանայք, որոնք խմբվել էին տախտակամածին, բոլորը ակամայից առաջ շարժվեցին և տախտակամածով ցասկոտ մի շունչ անցավ կարծես։

— Դավաճա՛ն...

Զինվորները շրջապատեցին նրան։ Մեշադի-բեկը ցատկեց նստարանին և գոչեց.

— Ընկերնե՛ր, ձեր լավագույն ընկերոջը մատնեցին։ Դուք ինչո՞ւ եք լռում։

Թեև սպան շրջապատված էր զինված զինվորներով, բայց իր մարմնի մեջ տհաճ մի դող զգաց։ Անվախ մարդու ձայնից նրա գույնը թռավ։ Սակայն հաղթահարելով վախը, նա դուրս քաշեց ատրճանակը և ճչաց զինվորների վրա։

— Ձերբակալե՛լ,— և նետվեց դեպի Մեշադի-բեկը։



Մեշադի-բեկը հայացքը փոխադրեց կուտակված մարդկանց վրա և նա զգաց, որ եթե Շահումյանը նշան անի, նրանք կնետվեն դավաճանի վրա և նրան նավից դուրս կնետեն. բայց Շահումյանը լռում էր։ Հաստատուն քայլերով նա առաջ եկավ։ Զինվորների սվինները շարժվեցին և փայլատակեցին։ Մոտենալով սպային, նա բարձրաձայն և հանգիստ ասաց.

— Իմ մահով չի կործանվի այն գործը, որի համար ես պայքարել եմ... Այդ բանը դուք երբեք մի՛ սպասեք...



Նորից առաջ շարժվեցին և փայլատակեցին սվինները։ Շրջապատելով Մեշադի-բեկին, զինվորները նրան տարան Շահումյանի մոտ։ Մեշադի-բեկը դիմելով տախտակամածի վրա հավաքված մարդկանց, գոչում էր.

— Կեցցե՜ Կոմունան...

Բազմությունը հուզվեց։ Ինչ-որ մեկը հեծկլտաց։ Սկսվեցին ձերբակալությունները։ Երեսուն մարդ բանտարկվեց։ Քաղաքի բնակիչները լցրին նավահանգիստը։ Բոլորը կարեկցում էին բանտարկյալներին, բայց չէին որոշում հարձակվել պահակախմբի

վրա։ Իսկ մոտերքում հանգիստ փայլում էր ծովը։

## 2

Բանտային նեղլիկ խցիկում միայն մի նեղ, փոքրիկ պատուհան կար։ Արևի շողերը այնտեղ ընկնում էին ընդամենը մի քանի րոպե և խցիկը իր մռայլությամբ ճնշում էր բանտարկյալներին։ Արդեն երկու օր էր, որ բանտարկյալներին պահում էին առանց ուտելիքի և ջրի։ Նրանց բանտարկող հանցագործները ոչ մի ստորության առաջ չէին կանգնում։ Մեշադի-բեկը քիչ էր խոսում, ավելի շատ լսում էր ընկերների պատմածները։ Սովը չէր կոտրում բանտարկյալների ոգին, և նրանք չէին խնդրում, այլ պահանջում էին. «Սեպտեմբերի 17-ից մեզ ուտելիք և ջուր չեն տվել։ Մենք գտնվում ենք ավելի վատ պայմաններում, քան նախկին ցարական բանտերում։ Խցիկում նեղվածք է, անկողիններ չկան, լվացարան չկա»։

Նրանց պատասխանում էին.

«Բանտարկյալներին հայտնել, որ բանտը հանգստի տուն չէ։ Հետագայում պետք է խնդրել և ոչ թե պահանջել։ Կարգադրել բանտարկյալներին, որպեսզի նրանք ավելի քիչ գրեն և ավելի շատ մտածեն»։

Քաղցը տանջում էր բանտարկյալներին, բայց նրանք աշխատում էին դրա մասին չմտածել։ Ինչ-որ մեկը հիշեց Լեոնիդ Անդրեևի «Յոթ կախվածների պատմությունը»։ Մեշադի-բեկը մտքում պահել էր այդ պատմվածքը, որը կարդացել էր դեռ տասներեք թվին։ Բայց նրան դուր չէր եկել, որ պատմվածքում դուրս բերված մարդիկ վախենում էին մահից։

— Հեղինակը նրբազգաց կերպով տալիս է իր հերոսների ապրումները,— ասաց նա,— և ընթերցողը հավատում է, որ դեպի մահը համարձակորեն ընթացող մարդիկ վերջում. այնուամենայնիվ, սարսափում են մահից։ Իսկ իմ կարծիքով սարսափը վերին աստիճանի հետադիմական զգացմունք է...

Շահումյանը, որ լսում էր խոսակցությունը, կռթնեց արմունկի վրա.

— Այդ ճիշտ է,— հաստատեց նա։— Ռևոլուցիան ստեղծում են այն մարդիկ, որոնք իրենց մեջ հաղթահարել են մահվան սարսափը...

Շահումյանը հիշեց մի քանի դրվագներ Լենինի կյանքից։

— Լենինը շատ լավ գիտեր, որ իր ամեն մի ելույթը կարող է իրեն Սիբիր կամ կախաղան տանել, բայց չէր հրաժարվում իր գաղափարներից, որովհետև նրան անհայտ էր սարսափի զգացումը։ Դա ռևոլուցիոների համար մահվանից ավելի դառն է։

Լևոնը, որ հորից շատ պատմություններ էր լսել Լենինի մասին, դառնությամբ մտածում էր. «Ինչպես ցույց տամ այստեղ, բանտում իմ անվախությունը»։ Շուռ գալով դեպի հայրը, Լևոնը, կարծես նրանից ներողություն խնդրելով, սկսեց հուզված պատմել վախի զգացմունքի մասին, որը համակել էր նրան, երբ նա պարենամթերք էր տեղափոխում Բաքու։

— Իսկ ինչի՞ց էիր դու վախենում,— հարցրեց Մեշադի-բեկը,— մահի՞ց։

— Ո՛չ, ես վախենում էի, որ մեր պարենամթերք բարձած նավը կընկնի սպիտակ գվարդիականների ձեռքը։ Հիշո՞ւմ եք, թե ինչ ծանր դրության մեջ էր գտնվում այն ժամանակ Բաքուն...

Հերթը հասավ Մեշադի-բեկին։

— Կյանքում ես երկու անգամ վախեցել եմ։

Եվ նա ընկերներին պատմեց Շամախիի դեպքի և բանվորների ապստամբության մասին։ Նրա պատմության մեջ ափսոսանքի և զղջման շեշտեր էին լսվում։

— Դա ճիշտ չէ,— առարկեց Շահումյանը։— Դու սխալվում ես, Մեշադի։ Դա մահվան սարսափ չէ։ Եթե Շամախիում քեզ սպանեին, ապա մահվանդ լուրը կհասներ ամբողջ գավառի բնակչությանը։ Ինչ վերաբերում է հանքի բանվորների ապստամբությանը, ապա այստեղ քեզ անմիտ մահ էր սպառնում։ Իսկ այդպիսի մահից վախենալն ամոթալի չէ։ Մահվան մեջ էլ պետք է ինչ որ իմաստ լինի...

— Դուրս է գալիս, որ կյանքում ոչ մի անգամ ես չե՞մ վախեցել,— ժպտալով ասաց Մեշադի-բեկը, նայելով ընկերոջը։

— Մի՛ շտապիր հետևություն անել,—

պատասխանեց Շահումյանը։— Դու դեռ պետք է դիմանաս վերջին փորձությանը...

Բոլորը հասկացան ակնարկը և ակամա լռեցին։

3

Սեպտեմբերի քսանի գիշերն էր, բանտարկյալների մի մասը ննջում էր նստած կամ պառկած որմնատախտերի վրա, մյուսները կանգնած լուսամուտի մոտ նայում էին փայլող լուսնին։ Մեշադի-բեկը հիշում էր երեխաների մասին։ Նրան թվում էր, որ Պյուստե խանումը, վիշտը չտանելով, մեռել է։ Եվ Մեշադի-բեկի սիրտը սեղմվում էր։ Նրա հայացքը գամված էր լուսամուտի ուղղանկյունուն, իսկ մտքերը այնտեղ էին, հայրենիքում։ Նա տեսնում էր Բաքուն, գոտևորված ծովի լայն ժապավենով։ Այն վայրերը, որտեղ անցել էին իր կյանքի լավագույն տարիները, նրան թվում էին այնքա՜ն գեղեցիկ, որ նա, մոռանալով մոտեցող մահվան մասին, սուր ցավ էր զգում նրանցից բաժան լինելու համար։

Հանկարծ շառաչեցին սողնակները և ճռնչալով բացվեց խցիկի դուռը։ Լսելով երկաթի զրնգոցը, ննջող մարդիկ բարձրացրին գլուխները։ Դռների մեջ երևաց մի հաստ մարդ։ Մեշադի-բեկը նայեց նրան։ Նա հագել էր նոր կոստյում, սպիտակ օսլայած օձիքով վերնաշապիկ և կապել էր խայտաբղետ փողկապ։ Ներս մտնողի աչքերը բանտարկյալների գլուխներից վեր էին նայում։ Դա դահիճ Կունն էր, որը մահվան էր մատնել Կրասնովոդսկի հարյուրավոր մարդկանց։ Քչերը կարող էին մրցել նրա հետ դաժանության և տմարդության մեջ։ Գնդակահարել մարդկանց և կտրել նրանց գլուխները, թվում էր, թե նրա կոչումն էր։ Կանգնելով դռների մեջ, նա գոչեց.

— Ո՞վ է ձեզանից ավագը։

Նրան թվում էր, թե իր ձայնի առաջին հնչյունի վրա մարդիկ իսկույն ոտքի կկանգնեն։ Բայց ոչ ոք չշարժվեց նույնիսկ։

— Ո՞վ է ձեզանից ավագը,— կրկնեց նա հարցը։

— Մենք ավագ չունենք...

— Այդ դեպքում, ո՞վ է այստեղ Շահումյանը։

Շահումյանը պառկած էր խցիկի անկյունում։

— Շահումյանը ես եմ,— պատասխանեց Ստեփանը, չփոխելով իր դիրքը։

Վճռելով, որ իրեն չճանաչեցին, խայտաբղետ փողկապով մարդը խռպոտ գոչեց.

— Ոտքի՛։ Դուք չգիտե՞ք, թե ով է խոսում ձեզ հետ։ Ես Կունն եմ։

Ոչ ոք չբարձրացավ։ Իրեն վիրավորված զգալով, որ չկարողացավ այդ մարդկանց վախ ներշնչել, Կունը շուռ եկավ կրունկների վրա և դուրս գնաց։ Մի քիչ հետո նորից խցիկի դռները բացվեցին։ Ներս մտած բանտապետը ձեռքին բռնել էր թղթի մի թերթ։ Շուրջը դիտելով և համոզվելով, որ զինված զինվորները կանգնած են իր ետև, նա սկսեց բանտարկյալներին կանչել ցուցակով.

— Շահումյա՛ն։

Նրա ձայնը նորից արթնացրեց նիրհածներին։

— Ե՛ս եմ...

Ստեփանն սպիտակ գվարդիականի ցուցմունքով անցավ խցիկի անկյունը։

— Ջափարիձե՛։

— Ե՛ս եմ...

Ջափարիձեն, որը կարողանում էր ընկերներին զվարճացնել նույնիսկ այդ ծանր օրերին, առույգ, անփոփոխ դեմքով անցավ և կանգնեց Շահումյանի կողքին։

— Ազիզբեկո՛վ։

Մեշադի-բեկը մոտեցավ Շահումյանին և Ջափարիձեին։

... Ցուցակը վերջացավ։

— Դուրս եկեք,— լսվեց հրամանը։

— Ո՞ւր եք տանում մեզ։

— Խցիկում նեղվածք է... Ձեզ տեղափոխում ենք քաղաքային բանտը...

Ամեն ինչ պարզվեց։ Լևոնը գրկեց հորը։

— Արիացի՛ր հոգով, որդի՛ս։ Մի՞թե այդպես են հորը ճանապարհում։

— Ո՛չ, հայրիկ։ Ես լաց չեմ լինում։ Բոլշևիկը չպե՛տք է արիությունը կորցնի։

Եվ Լևոնը սրբեց աչքերը։

— Ապրեցե՛ք երեխաներ։ Ձեզանից ապագա սերունդը կիմանա, մեր վերջին րոպեների մասին։



Լսելով այդ խոսքերը Մեշադի-բեկը նայեց Լեոնին և հետո հայացքը տեղափոխելով Սուրենի վրա, ասաց.

— Ապրեցե՛ք, սիրելիներս։ Հաղորդեցե՛ք մեր ողջույնը մեր մայրերին և քույրերին, որոնց մեր մահը մեծ ցավ կպատճառի։

Նրանց տարան։ Քասումը կոմիսարներին կլանեց գիշերային խավարը։ Անցնելով մի փոքր տարածություն, Մեշադի-բեկը կանգնեց և մթության մեջ գոչեց.

— Մնաք բարո՛վ, ընկերնե՛ր։ Մենք դեռ կհանդիպենք արևածագին...

Թարգմ. Լ. ԱՍՄԱՐՅԱՆ

# ԴԱՍԱԳՐՈՒԼԸ

Շ. ՎԱՐՍՅԱՆ

Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ

Ուշ գիշերին Խրիստոն տուն եկավ չափազանց հոգնած և վատ տրամադրությամբ։ Երեխաները քնած էին։ Կինը ցուրտ սենյակի մի անկյունում կծկված, լամպի աղոտ լույսի տակ, կարկատում էր երեխաների շորերը։ Վառարանը չէր վառվում, և ընդհանրապես ամբողջ սենյակում տիրում էր սրտաճմլիկ լքվածություն։

Խրիստոն աթոռակը քաշեց կնոջ մոտ, և մեջքից կռանալով ու արմունկով հենվելով ծնկին, սկսեց ափերի մեջ տրորել վաղաժամ սպիտակած մորուքը։ Նա հազիվ երեսուն հինգ տարեկան էր, բայց ծեր էր երևում։ Մռայլ հոգսերով, ծանր աշխատանքով և քաղցած օրերով ծանրաբեռնված մի կյանք էր ապրել նա։

— Որքա՞ն պարտք ունենք,— հարցրեց նա իր կնոջը երկար լռությունից հետո։

— Տասը շիլինգ նպարավաճառին,— սկսեց կինը։— Ի միջի այլոց նա դադարել է մեզ ապառիկ տալուց։

— Ուրի՞շ։

— Տասնհինգ շիլինգ հացագործին,



քսաներկու շիլինգ տան վարձ, երեսուն շիլինգ երեխաների ուսման վարձ։

— Բավակա՞ն է,— գոռաց Խրիստոն,—

բավական է, էլ չեմ ուզում լսել,— և ոտքով խփելով աթոռակին սկսեց արագ-արագ, մեծ-մեծ քայլերով երթևեկել սենյակում։ Նրա քայլերից հողաշեն սենյակը ցնցվում էր և խարխուլ պատերից ու առաստաղից հող էր թափվում։

— Վաղվանից,— ասաց Խրիստոն առանց դադարեցնելու քայլերը,— վաղվանից երեխաներին դպրոց չես ուղարկի, իմացա՞ր։ Երեսուն շիլինգ պա՜րտք... Չգիտեմ որտե՞ղից խելքիդ փչեց երեխաներին դպրոց ուղարկել։ Վաղվանից թող գնան աշխատեն, ինչպես մյուս երեխաներն են անում...

Երեխաներից մեծը՝ Սավան, տասնմեկ տարեկան էր, Պետրոն՝ ութը։ Երեք փոքր երեխաներն անցյալ ձմռան մահացել էին, մեկը՝ ուղեղի հիվանդությունից երկուսը՝ թոքերի բորբոքումից։ Երբ նրանց հայրը աշխատում էր, նրանք վատ էին ապրում, որովհետև վճարում էին անգործության ժամանակ կուտակված պարտքերը։ Իսկ երբ Խրիստոն անգործ էր լինում՝ երեխաները կրկնակի վատ էին ապրում։ Եվ ահա, երեք ամիս է, ինչ փակվել էին կղզու ծխախոտի ֆաբրիկաները, և Խրիստոն անգործ էր։ Այդ գիշեր երեխաները քնել էին միմիայն մի բաժակ թեյով։ Մայրը պահել էր տանը գտնվող մի կտոր սև հացը՝ առավոտվա համար։

Բայց Խրիստոն պառկեց հատակին փռված խսիրի վրա և բղավեց.

— Ուտելու որևէ բան տուր, սոված եմ։

Սոֆուլլան ուզեց ամուսնուն ասել, որ տանը ոչինչ չկա, բայց հիշեց, որ նա առավոտվանից ոչինչ չէր կերել, և սնդուկից հանելով երեխաների համար պահած հացը, պարզեց ամուսնուն։

— Սրանից բացի ոչինչ չունեմ,— շշընջաց։

— Ի՞նչ է, ուզում էիր միս ու ճարպ ունենա՞լ,— բորբոքված խոսեց Խրիստոն։— Աշխատանք չկա, հասկանո՞ւմ ես, աշխատանք չկա՜...— գոռաց նա այնպես, ինչպես խուլերի հետ խոսելիս են անում։

Կինը ցնցվեց։

— Ես... ես բոլորովին այդ չէի ուզում ասել,— շփոթված ասաց նա,— և հանկարծ դեմքը շուռ տալով ամուսնուց՝ սկսեց հեծկլտալ։

Ամիսների անգործությունը, աշխատանքի ապարդյուն որոնումները, քաղցի սպառնալիքը, Խրիստոյի հոգին դարձրել էին չոր ու կոպիտ։ Նա հանկարծ հասկացավ, որ ինքն ուտում է երեխաների հացի վերջին կտորը։ Նա հացը դեն շպրտեց և գլուխը ծածկեց վերմակով։

— Մեզանում կյանքը ճահիճ է,— ասաց նա։ Այնուհետև Սոֆուլլան էլ ոչինչ չլսեց և չիմացավ, ամուսինը քնե՞լ է, թե՞ մտածում է։ Իսկ ինքը երկար ժամանակ լաց էր լինում և մտածում հաջորդ օրվա մասին։

***

Առավոտյան Սավան և Պետրոն դուրս եկան տնից։

— Ինչո՞ւ եմ ես դպրոց գնում,— մտածում էր Սավան, եղբոր հետ քայլելով փողոցներով, չէ՞ որ դիրեկտորը սպառնացել է ինձ հեռացնել։ Բայց ինչպե՞ս հրաժարվել դպրոցից... Չէ՞ որ այդ օրը հինգշաբթի էր, շաբաթվա մեջ միակ օրը, երբ երգի դաս ունեին, իսկ Սավան այնպե՜ս էր սիրում երաժշտություն... Նա շատ գուրեկան ձայն ուներ։ Շատ գեղեցիկ երգում էր և հրաշալի նվագում սրնգի վրա։

«Գուցե այսօր դիրեկտորը դասարան չմտնի, գուցե այս օրը աննկատելի անցկացնեմ», աշխատում էր իրեն սիրտ տալ Սավան, բայց քանի մոտենում էր դպրոցին, անհանգստությունն ավելանում էր։ Իսկ եթե դիրեկտորը գա ու ասի.

— Սավա Խրիստոֆի տիս, դուք բերե՞լ եք ուսման վարձը,— ի՞նչ կպատասխանի ինքը։

Նա մի րոպե պատկերացրեց բարձրահասակ և հաստամարմին դիրեկտորին ամբիոնի վրա կանգնած, կանաչավուն ու խոժոռ աչքերը ուղղած իր վրա։

— Չէ՜,— որոշեց Սավան,— ես դպրոց չեմ գնա, խայտառակություն կլինի ամբողջ դասարանի աչքի առաջ հեռացվել դպրոցից։

Նա եղբոր փոքրիկ, նիհար ձեռքերը իր ափի մեջ քնքշությամբ շոյելով, ասաց.

— Պետրո՛, արի գնանք ծովափ։

— Գնում ես Խրիստինա մորաքրոջ մոտից հա՞ց գնես, հա՞... Իսկ եթե դպրոցից ուշանանք...

Սավան կարեկցանքով նայեց եղբորը.
— Ոչի՜նչ, Պետրո՛, այսօր դպրոց չենք գնա,— իսկ մտքում ավելացրեց,— մենք էլ երբեք դպրոց չենք գնա...



***

Նավահանգստում կանգնած էր անգլիական առևտրական մի նավ:
Հեռվում հավաքվել էին բազմաթիվ մարդիկ: Սավան եղբոր հետ դանդաղ քայլերով ուղղվեց դեպի ամբոխը: Նա տեսավ ոստիկաններին, որոնք ճիպոտներով սպառնում էին նավահանգստի բանվորներին, իսկ կիպրական հունական լիցեյի մի ուսանող գոռում էր.
— Բանվորնե՛ր, չբեռնաթափե՜լ նավը: Նրանք փակել են մեր ծխախոտի ֆաբրիկաները և ահա իրենց նավը ծխախոտ է բերում վաճառելու:
«Էլի գործադուլ է», մտածեց Սավան, հեռացավ ու նստեց մի մեծ քարի վրա, որի սառնությունից ամբողջ մարմինը փշաքաղվեց:
Ալիքների վրա օրորվում էր մի ձկնորսական նավ, որից Սավային էր հասնում ձկնորսների թախծալի երգը:
Սավան նայում էր ծովափնյա ավազի վրա փռվող սպիտակ փրփուրին և մտովի այնակցում իրեն մանկուց ծանոթ այդ երգին: «Առաջին դասն հիմա սկսվել է», մտածում էր նա: Պատմության ուսուցիչը կպատմի հին Հունաստանի դիցաբանության մասին, մի քիչ հետո կսկսվի երգի դասը: Դասարան կմտնի իր սիրելի ուսուցչուհին՝ Ելենի Կիրիակիդիսը: Նա կնկատի՞ իր բացակայությունը... Չէ՞ որ ինքը բոլորից լավ է երգում...
Մի՞թե ինքն էլ երբեք, երբեք չի վերադառնալու դպրոց: Ի՜նչ կլիներ եթե սովորելը ձրի լիներ...

Արցունքները հոսում էին նրա աչքերից, իսկ ձկնորսները շարունակում էին երգել.
«Գեղեցիկ են, տես, լեռները, ծովը առավել ևս»:

***

— Սոֆո՛կլի, ո՞ւր է Սավան,— շտապ քայլերով դասարան մտնելով, շնչակտուր հարցրեց Մարիցան:— Ես չկարողացա լուծել թվաբանության խնդիրները, իսկ նա խոստացել էր ինձ բացատրել:
— Ես առավոտյան նրան տեսա փողոցում, իսկ մինչև հիմա նա չի եկել: Չգիտեմ, գուցե և չի գալու, չէ՞ որ երեկ դիրեկտորը նրան նախազգուշացրեց...— մտահոգված խոսեց Սոֆոկլին, Սավայի ամենամտերիմ ընկերը...
— Հետո՞...
— Դե նրա հայրը անգործ է, նա ո՞րտեղից կարող է վճարել ուսման վարձը:
— Այո՛, դժվար է,—շշնջաց Մարիցան և գնաց նստեց իր տեղում: Նա միայն նայում էր Սոֆոկլիի կողքին դատարկ մնացած Սավայի տեղին և մտածում.
— Ինչքա՜ն վշտացած կլինի այժմ Սավան: Նա ինչքան լավ էր սովորում, օգնում մեզ բոլորիս: Դեռևս մի շաբաթ առաջ, երբ ես հիվանդ պառկած էի անձրևի տակ, նա այցելեց ինձ, որպեսզի բացատրի անցած դասերը...

Մարիցան սուր խղճահարություն զգաց, և մոտենալով Սոֆոկլիին շատ ցածր ձայնով ասաց.

— Սոֆո՛կլի, մենք պետք է օգնենք Սավային, չե՞նք կարող փող հավաքել և ինքներս վճարել նրա ուսման վարձը։

Սոֆոկլին բացասաբար օրորեց գլուխը.

— Երեսուն շիլինգ մենք չենք կարող հավաքել, դա շա՜տ շատ է։ Մեզանից շատերի դրությունն էլ վատ է...

Մարիցան շփոթված խաղում էր ուսերն ի վար կախված մազերի սև ու հաստ երկու հյուսքերի հետ.

— Սոֆո՛կլի, գուցե խնդրենք դիրեկտորին, որ թույլ տա նրան ներկա լինել դասերին մինչև որ...

— Խնդրել դիրեկտորի՞ն, ի՞նչ հիմար բան ես ասում։

Սոֆոկլին այնպես անհանգիստ շարժվեց տեղում և այնպես բարկացած նայեց Մարիցային, որ այս վերջինս խեղճացած թոթովեց.

— Հապա ի՞նչ անենք, մեղք է Սավան...

Եվ ահա Սոֆոկլին վեր կացավ և մոտեցավ ամբիոնին, որտեղ դրված էր ուսուցչի սեղանը։ Բոլոր աշակերտների նայվածքները ուղղվեցին նրան...



— Սավան այսօր դպրոց չի եկել,— սկսեց նա,— բոլորդ գիտեք, թե ինչու։ Հարկավոր է նրան մենակ չթողնել։ Ես որոշել եմ նույնպես հեռանալ դպրոցից և խնդրում եմ նրանցից, ովքեր սիրում են նրան, նույնպես թողնել դասարանը։

— Սոֆո՛կլի, դու այդ ինչպե՞ս մտածեցիր,— նրա ետևից դպրոցի աստիճաններով իջնելով ուրախ-ուրախ խոսում էր Մարիցան.— իհարկե, խնդրելն անմիտ բան կլիներ. պետք է բողոքել, դու շատ լավ մտածեցիր...

Երբ քիչ հետո դիրեկտորը դասարան մտավ, այդտեղ նստած գտավ միայն վեց հոգու։ Առանց հարցի սպասելու, կղզու դատախազի օգնականի որդին՝ Ցաննակին վեր կացավ ու զեկուցեց.

— Պարո՛ն դիրեկտոր, մենք չուզեցինք հետևել խուլիգանների օրինակին և մնացինք դասարանում։ Իսկ նրանք հեռացան բողոքելով Սավայի հեռացվելու դեմ։

— Ի՞նչ...

Դիրեկտորը իր կանաչավուն աչքերը լայն բացած մի րոպե նայեց Ցաննակիին և նոր միայն հասկանալով նրա խոսքերի իմաստը, սարսափած սեղմեց ատամները։

— Ուրեմն դասադո՞ւլ... ուրեմն վարակը մտավ և դպրո՞ց. Դա-սա-դո՜ւլ... Այո՛, սկսվե՜ց, սկսվե՜ց...

Նա այդ ասաց հուսահատ, ընկճված տոնով, զգալով, որ դեմ է առել մի աղետի, որի դեմ անզոր է պայքարելու... Դրա համար, այդ անկարգության համար իրեն չեն ների կղզու անգլիացի կառավարիչները, և առաջին հերթին տեսուչ միստր Կալընը։

Իսկ Սավան, շրջապատված իր ընկերներով, թավշային ձայնով երգում էր.

«Գեղեցիկ են, տես, լեռները, ծովը առավել
ևս...»

# ՕԼԻՄՊԻԱԿԱՆ ԽԱՂԵՐԸ ՀԵԼՍԻՆԿԻՈՒՄ

Հուլիսի տասնինից մինչև օգոստոսի երեքը Ֆինլանդիայի մայրաքաղաք Հելսինկիում տեղի ունեցան 15-րդ միջազգային օլիմպիական խաղերը: Աշխարհի 70 երկրներից այնտեղ էին եկել մոտ յոթ հազար սպորտսմեններ...

Օլիմպիական խաղեր անց են կացվել դեռևս հին Հունաստանում: Յուրաքանչյուր չորս տարին մեկ հին հույները երկրի բոլոր ծայրերից հավաքվում էին Ալֆեյա գետահովտի Օլիմպիա վայրը, որտեղ ծավալվում էր սպորտային սուր պայքար:

Մեր թվականությունից առաջ, չորրորդ դարի վերջում, այդ խաղերը դադարեցվեցին և միայն վերականգնվեցին 2300 տարի հետո՝ 1896 թվականին: Առաջին մրցումները տեղի ունեցան Աթենքում ի պատիվ հին հունական օլիմպիական խաղերի: Այնուհետև օլիմպիական խաղերը տեղի էին ունենում չորս տարին մեկ՝ նահանջ տարիներին, աշխարհի զանազան մասերում:

Կապիտալիստները միշտ էլ օլիմպիական խաղերն օգտագործել են ազգերի միջև գժտություն ստեղծելու, ազգայնական զգացմունքները գրգռելու նպատակով: Այնինչ աշխարհի աշխատավոր մարդիկ այդ խաղերն անց են կացնում ժողովուրդների բարեկամության, ազգերի համերաշխության նշանաբանով:

Այս տարվա օլիմպիական խաղերը տարբերվում են մինչև այժմ եղած խաղերից: Ամբողջ աշխարհը առանձին հետաքրքրությամբ էր հետևում այդ խաղերին: Պատճառն այն էր, որ այս տարի առաջին անգամ օլիմպիական խաղերին մասնակցություն ունեցան սովետական սպորտսմենները:

Հենց առաջին օրը, երբ օլիմպիական ստադիոնում երևացին սովետական սպորտսմենները, ներկաները բուռն ծափահարություններով դիմավորեցին նրանց: Աշխարհի հասարակ մարդիկ հանձին մեր սպորտսմենների տեսնում էին խաղաղության կողմնակիցների հզոր շարժման ավանգարդում ընթացող սովետական մեծ ժողովրդի ներկայացուցիչներին:

Օլիմպիական խաղերի ընթացքում սովետական սպորտսմենները ցուցադրեցին բարձր արվեստ ու հմտություն: Նրանք սահմանեցին 2 համաշխարհային, 3 եվրոպական և 12 համամիութենական նոր ռեկորդներ:

Մրցություններում չտեսնված հաջողությունների հասան սովետական մարմնամարզիկները: Նրանք նվաճեցին օլիմպիական չեմպիոնների կոչումներ՝ մարմնամարզության գծով գրավելով բոլոր առաջին տեղերը: Վեց մեդալ է զարդարում Վիկտոր Չուկարինի կուրծքը: Նա արժանացավ մարմնամարզության օլիմպիական բացարձակ չեմպիոնի կոչման: Չորս մեդալ ստացավ մեր մյուս մարմնամարզիկը՝ Հրանտ Շահինյանը:

Մեծ վարպետություն ցույց տվին նաև սովետական ըմբիշները: Մեկոկիշվիլին, Ցիմակուրիձեն, Կոտկասը, Պանկինը և ուրիշները ստացան օլիմպիական




*Սովետական մարմնամարզիկներ Մ. Գորոխովսկայան և Ն. Բոչարովան տասնհինգերորդ օլիմպիական խաղերում գրավեցին առաջին տեղը և նվաճեցին մարմնամարզության բացարձակ չեմպիոնի կոչում:*
*(Ֆոտոխրոնիկա ՏԱՍՍ)*

չեմպիոնի կոչում և պարգևատրվեցին ոսկե մեդալներով: Մի շարք ուրիշ ըմբիշներ ստացան արծաթե և բրոնզե մեդալներ:

Աչքի ընկնող հաղթանակ տարավ սովետական ծանր ատլետ Ռաֆայել Չմշկյանը, որը համաշխարհային նոր ռեկորդ սահմանեց դասական եռամրցման գծով: Նա բարձրացրեց 337,5 կիլոգրամ ծանրություն: Մեծ հաջողությունների հասան նաև սովետական մյուս ծանր ատլետները:

Լուրջ հաջողությունների հասան մեր թեթև ատլետները: Սկավառակի նետման գծով օլիմպիական նոր ռեկորդ սահմանեց Նինա Ռոմաշկովան: Նա սկավառակը նետեց 51,42 մետր: Երկրորդ և երրորդ տեղերը նույնպես գրավեցին սովետական թեթև ատլետները:

Գնդի նետման գծով Գալինա Զիբինան սահմանեց համաշխարհային ռեկորդ:

Սովետական սպորտսմենները մրցումների 16 օրվա ընթացքում նվաճեցին 106 օլիմպիական մեդալ, որոնցից 38 ոսկե, 53 արծաթե և 15 բրոնզե:

Տասնհինգերորդ օլիմպիական խաղերում մեծ հաջողությունների հասան ժողովրդական դեմոկրատիայի երկրների սպորտսմենները: Հաղթանակներ տարան Հունգարիայի ֆուտբոլիստները, վատերպոլիստները, սուսերամարտիկներն ու լողորդները, որոնք նույնպես նվաճեցին օլիմպիական չեմպիոնի կոչումներ:

Օլիմպիական խաղերը անցկացան խաղաղության համար մղվող պայքարի նշանաբանով: Նրանք ավելի ամրապնդեցին տարբեր երկրների ժողովուրդների բարեկամությունը:

Օլիմպիական 15-րդ խաղերում հաղթեցին սովետական սպորտսմենները: Նրանք հաղթեցին, որովհետև մեր երկրում պետությունը հոգ է տանում յուրաքանչյուր սովետական մարդու նկատմամբ, որովհետև մեզ մոտ բոլոր հնարավորությունները ստեղծվել են ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման համար, որովհետև մեզ մոտ ֆիզկուլտուրնիկները միշտ շրջապատված են Մեծ Ստալինի հայրական հոգատարությամբ:




*Հինգ օր անընդհատ սպորտային սուր պայքար էր գնում Լենինականի քաղաքային համբարների վոլեյբոլի թիմերի միջև: Նրանք պայքարում էին «Պիոներ» ամսագրի փոխանցիկ գավաթի համար: Համառ պայքարից հետո ֆինալ դուրս եկան 14-րդ և 37-րդ համբարների տղաների, 50-րդ և 93-րդ համբարների աղջիկների թիմերը:*

*Ֆինալային խաղերը տեղի ունեցան քաղաքային ստադիոնում, հուլիսի 29-ին: Հաղթեցին 14-րդ համբարի տղաների և 50-րդ համբարի աղջիկների թիմերը:*

*Առաջնություն շահած թիմերն ստացան «Պիոներ» ամսագրի գավաթը և պարգևատրվեցին պատվոգրերով:*

*Ռ. ՄԿՐՏՉՅԱՆ*



№ 14 ճաղաճային համբարի վոլեյբոլիստների թիմը, որը շահեց «Պիոներ» ամսագրի փոխանցիկ գավաթը:



Առաջնություն շահած № 50 ճաղաճային համբարի վոլեյբոլիստները:

*Ֆոտո՝ Ս. ՄԿՐՏՉՅԱՆԻ*

# ՄԵՐ ԷՔՍԿՈՒՐՍԻԱՆ

Քննությունները հաջող հանձնելուց հետո, մենք որոշեցինք կազմակերպել էքսկուրսիա դեպի Գորի, Թբիլիսի և ուսումնասիրել ընկեր Ստալինի կյանքի ու ռևոլյուցիոն գործունեության հետ կապված վայրերը և ծանոթանալ Թբիլիսի քաղաքին:

Ահա Գորին: Ինչքա՜ն հարազատ է ա՛յդ քաղաքը մեզ համար, ինչքա՜ն գեղեցիկ: Քաղաքի միջով գալարվելով անցնում է Քուռ գետը: Երևի փոքրիկ Սոսոն նրա ափին նստած մտածել է աշխարհի անարդար կարգերի մասին, երազել լուսաշող ապագա ստեղծելու մասին: Այն փոքրիկ խրճիթը, որտեղ ծնվել է Մեծ Ստալինը, մեզ շատ հուզեց: Բոլորս դիտում էինք հին մահճակալը, փոքրիկ սեղանը, հնամաշ ծածկոցով աթոռները:

Առաջնորդի տնակը շրջապատված է մի գեղեցիկ այգիով, որը լիքն է անուշահոտ վարդերով ու պիոններով, երկնասլաց կիպարիսներով և երկնագույն եղևնիներով: Այնուհետև մենք եղանք Գորու թանգարանում և ծանոթացանք հարազատ Ստալինի ռևոլյուցիոն գործունեության հետ:

Այդ օրերին Առաջնորդի ծննդավայրը տեսնելու էին եկել Լենինգրադի և Բաքվի մի խումբ դպրոցականներ: Մենք շատ շուտ բարեկամացանք նրանց հետ: Լենինգրադցիները առաջին անգամն էին լինում Անդրկովկասում և անընդհատ հարցեր էին տալիս Հայաստանի և Երևանի մասին: Մենք սիրով պատասխանում էինք նրանց հարցերին:

Երբ մենք վերադարձանք Թբիլիսի, գնացինք Պատմական-ազգագրական թանգարանը, որտեղ ծանոթացանք Թբիլիսիի պատմությանը: Այդ օրը երեկոյան մենք բարձրացանք ֆունիկուլյոր, զբոսնեցինք ընկեր Ստալինի անվան հանգստի ու կուլտուրայի պարկում և դիտեցինք Քուռ գետի ափերին էլեկտրական լույսերի մեջ ողողված Թբիլիսին:

Թբիլիսիում մենք մնացինք հինգ օր: Այդ ժամանակ եղանք Վրաստանի թանգարանում, Հավլաբարի բոլշևիկյան գաղտնի տպարանում, կենդանաբանական ու բուսաբանական այգիներում: Հավլաբարի գաղտնի տպարանի մասին մենք շատ էինք կարդացել, սակայն ավելի տպավորիչ էր, երբ սեփական աչքերով տեսանք:

Հուշերի տետրում գրեցինք մեր տպավորությունները:

«Անմահ հուշեր ենք տանում մեզ հետ, մեր շնորհակալության խոսքն ուղղելով այն մարդուն, որը մեզ ազատ ու երջանիկ կյանք տվեց, և որի անունը քաղցր է հնչում աշխարհի խաղաղասեր մարդկանց սրտերում...»

Թողնելով մեր հուշերը «Ստալինյան ուղի» պատի թերթում, վերադարձանք Երևան:

Մենք շնորհակալություն ենք հայտնում մեր ուսուցիչներին, որոնք կազմակերպեցին այդքան հետաքրքիր և օգտավետ մի էքսկուրսիա:

*ԳՈՀԱՐ ԽԱԱՅԱՆ*
*(Երևանի Կրուպսկայայի անվան դպրոցի աշակերտուհի)*

# ԴՊՐՈՑԻ ԱՅԳՈՒՄ

Հրաշալի այգի են անեցրել էջմիածնի շրջանի Ներքին Ջեյվա գյուղի դպրոցականները: Միայն այս տարվա գարնանը նրանք տնկեցին հազարից ավելի դեղձի, ծիրանի, խնձորի և այլ պտղատու ծառեր: Այժմ դպրոցին կից տարածվում են պտղատու այգու գեղեցիկ ծառուղիները: Ծառերը խնամում է պատանի բնասերների խմբակի պողաբույծների օղակը:

Պատանի բնասերների խմբակում ստեղծվել են նաև բամբակագործական, ինչպես նաև բազիլիկի մշակության օղակներ: Բազիլիկը բոլորովին նոր կուլտուրա է և բնասերներից պահանջում է հատուկ ուշադրություն: Չնայած դրան՝ պիոներների աշխատանքի արդյունքը ցույց է տալիս, որ նրանք լավ են տիրապետում իրենց գործին:

Պատանի բնասերներն իրենց դպրոցի այգում, իրենց անեցրած ծառերի ու բույսերի վրա սովորում են միչուրինյան մեծ գիտությունը:

*Ն. ՄԻՐԶՈՅԱՆ*

# ՏԻԵԶԵՐՔԻ ԳԱՂՏՆԻՔՆԵՐԻ ՀԵՏԱԶՈՏՈՂԸ

ԱՇՈՏ ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ



Նկ. Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ

Սևանա լճի ափերին, բարձր սարերի մեջ գտնվող մի փոքրիկ գյուղում, 1908 թվականին ծնվեց մի տղա։ Անցան տարիներ... Երբ նա հարավային մութ գիշերները դուրս էր գալիս տնից, անհամար աստղերով շողշողացող երկինքը նրան շատ մոտիկ էր թվում։ Նա պառկում էր գետնին ու երկար ժամանակ հետևում երկնային կրակների կանաչավուն առկայծումներին։ Հաճախ նրա հայացքը կանգ էր առնում մեծ ու փայլուն մի աստղի վրա։ Պատանին մտածում էր նրա մասին, ինչպես իր հեռավոր ու անիրագործելի թվացող երազանքի և հույսի մասին։

Ասում են, հենց այստեղ՝ Սևանի ափին է ծնվել այն լեգենդը, թե ինչ-որ մի մարդ ցանկացել է երկնքից ցած բերել մի մեծ ու փայլուն աստղ, որի մեջ մարմնավորված է եղել հույսն ու երջանկությունը։ Թերևս մարդկային երևակայությունն ինչ-որ բան է խառնել այդ լեգենդին, բայց աստղերի աշխարհը տիրաբար դեպի իրեն էր ձգում փոքրիկ երազողին՝ Վիկտոր Համբարձումյանին։ Նա իր ամբողջ գիտակցական կյանքը նվիրեց տիեզերքի գաղտնիքները մեկնաբանելուն։

Աստղերի առեղծվածային աշխարհը վաղուց գրավել է շատ գիտնականների և պատահական կեղծ գիտնականների ուշադրությունը։ Օգտվելով նրանից, որ ոչ ոք աստղերի մասին ոչինչ չգիտեր, նրանք փորձում են գուշակել մարդկության բախտը, այս կամ այն աստղի լույսի տակ հիվանդություններ բուժել։ Բայց միայն իսկական գիտությունը աստղաբաշխությունը ծառայեցրեց մարդկությանը։

Վիկտոր Համբարձումյանը սովետական այն գիտնականներից մեկն է, որը ջախջախիչ հարված հասցրեց բուրժուական աստղագետների հնարանքներին։ Նա ապացուցեց նրանց տեսակետի անհեթեթությունը տիեզերքի անփոփոխության մասին։ Այդ գիտնականները աշխարհը դիտում են որպես անշարժ ու քարացած մի բան, չնկատելով նրա զարգացումը։ Իսկ մի քանի հետադեմ աստղագետներ ուղղակի ասում են, որ երկիրն ու երկինքը աստված է ստեղծել։ Անգլիական աստղագետ Միլնը անգամ «հաշվել է», որ տիեզերքը ստեղծվել է երկու միլիարդ տարի առաջ։

Հենվելով բազմաթիվ դիտումների և տեսական հաշվումների վրա, Վ. Համբարձումյանը ցույց է տվել Գալակտիկայի սիստեմի մեջ մտնող տարբեր աստղային համակարգությունների զարգացման պրոցեսը։ (Հունարեն Գալակտիկա են անվանում տիեզերքի այն հսկայական սիստեմը, որ երևում է մեր աչքին երկնակամարի վրա)։

Իր հետազոտությունների հետևանքով, Վ. Համբարձումյանը հայտնաբերել է շատ երիտասարդ աստղային խմբերի գոյությունը և դրանք կոչել է «աստղասփյուռներ»։ Նա ապացուցել է, որ ինչպես այդ աստղասփյուռները, այնպես էլ նրանց մեջ մտնող աստղերը մի քանի միլիոն տարեկան էլ չեն, այն դեպքում, երբ մի շարք այլ աստղերի միջին հասակը կազմում է մի քանի միլիարդ տարի։ Դա նշանակում է, որ աստղասփյուռները համեմատաբար նոր են առաջացել։ Սրանից Վ. Համբարձումյանը եզրակացրեց, որ Գալակտիկայի աստղերի ձևավորումը կատարվում է նաև այժմ։ Այսինքն՝ աստղերը առաջացել են երեկ, առաջանում են այսօր և կառաջանան վաղը։ Պարզ է, որ այս

հետևությունը հիմնովին հերքում է արտասահմանյան աստղագետների այն հենարանները, որ բոլոր աստղերը ստեղծվել են միանգամից, սկզբնական հարվածի շնորհիվ:

Այս ամենի մասին Վիկտոր Համբարձումյանը հետաքրքիր և պարզ ձևով պատմեց Բյուրականի աստղադիտարանը եկած Երևանի պիոներներին:

Աշխատելով ոչ մի բառ բաց չթողնել, երեխաները մեծ ուշադրությամբ լսում էին աստղագետի գրավիչ զրույցը, որն իր աշակերտ Բ. Մարգարյանի հետ միասին այդ աչքի ընկնող աշխատանքի համար արժանացել է Ստալինյան առաջին աստիճանի մրցանակի:

Երեխաների հետաքրքրությանը սահման չկար: Նրանցից մեկի այն հարցին, թե՝ ինչո՞ւ է այս խոշոր աստղադիտարանը կառուցվել Երևանից հեռու, Վիկտոր Համբարձումյանը բացատրեց.

— Երբ ես 1944 թվականին աստղագետների արշավախմբի հետ առաջին անգամ եկա Բյուրական գյուղը, մեզ ուրախացրեց գեղեցիկ բնությունը, իսկ կապուտակ երկնակամարը ուղղակի հիացրեց: Այստեղ բացակայում է փոշու շերտը, որը հարթավայրում սովորաբար խանգարում է դիտումներին: Դա հնարավորություն է տալիս ավելի հեշտությամբ թափանցել անսահման տիեզերքի գաղտնիքների խորքը: Այս էլ որոշեց ապագա աստղադիտարանի կառուցման տեղը:

Աստղադիտարանի աշխատանքի առաջին տարին չկային ո՛չ աշխատանոցներ, ո՛չ օժանդակ, ոչ էլ բնակելի շենքեր. բայց գիտնականների կոլեկտիվն սկսեց իր ստեղծագործական աշխատանքը: Կարելի է ասել դեռևս դատարկ տեղում, բաց երկնքի տակ, դրվում էին աստղադիտակներ և այլ սարքեր: Բայց շուտով հայտնի դարձան առաջին արդյունքները:

Պատմելով այդ մասին, Վիկտոր Համբարձումյանը ցույց տվեց «Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի զեկուցագրերը», որտեղ առաջին անգամ հրապարակվել է նրա հաղորդումները տիեզերքի նոր աստղային սիստեմների մասին: Գիտնականի այդ նոր աշխատությունները հետաքրքրեցին ոչ միայն Սովետական Միության, այլ և նրա սահմաններից հեռու գտնվող աստղագետներին:

Սովետական Միության բոլոր ծայրերից, աշխարհի բոլոր երկրներից Վիկտոր Համբարձումյանը բազմաթիվ նամակներ է ստանում, որոնց մեջ նրան խնդրում են՝ հայտնել իր կարծիքը ժամանակակից աստղագիտության այս կամ այն հարցի մասին: Աշխարհի աստղագետները նրան են դիմում, որպես աստղային հաշվառման և գալակտիկական մշուշների հանձնաժողովի անդամի և որպես Աստղագետների միջազգային Միության փոխ-պրեզիդենտի: Չէ՞ որ հենց այստեղ, Բյուրականի աստղադիտարանում է Համբարձումյանին հաջողվել հայտնաբերել աստղասփյուռներ:

Բյուրականի աստղադիտարանի, նրա ղեկավար Համբարձումյանի աշխատանքը ներթափանցված է ռուս առաջավոր գիտնականների փառավոր տրադիցիաներով: Ուսանողական տարիներին Համբարձումյանը սովորել է նշանավոր ռուս գիտնական Գ. Տիխովի մոտ. բայց նրա վրա ամենից մեծ ազդեցություն է թողել ռուս խոշորագույն աստրոֆիզիկ, ակադեմիկոս Ա. Բելոպոլսկին:

Աստրոֆիզիկայի ու աստղագիտության մասին Համբարձումյանի աշխատությունները նրան համաշխարհային հռչակ բերեցին: Այդ աշխատությունների համար 1934 թվականին նրան, առանց դիսերտացիա պաշտպանելու շնորհեցին ֆիզիկո-մաթեմատիկական գիտությունների դոկտորի աստիճան: Հինգ տարի հետո, երիտասարդ գիտնականը, որը բոլորել էր իր երեսունմեկ տարին, ընտրվում է ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ, իսկ 1947 թվականին՝ Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ:

Երբ վրա հասավ մթնշաղը, երեխաները ջերմ շնորհակալություն հայտնեցին Վիկտոր Համբարձումյանին բովանդակալից զրույցի համար ու դուրս եկան աստղադիտարանից: Ո՞վ գիտի տպավորված ու երազող այդ երեխաներից քանիսի մտքում խարսխվեց աստղագետ դառնալու երազանքը:

Նրանք դեռ երկար ժամանակ նայում էին

*հիասքանչ տեսարանին, որ երևում էր այդ պահին Բյուրականի բարձունքից։ Վերևում հարավային ջինջ երկինքն էր, աստղային սիստեմների անսահման հարստություններով, իսկ ներքևում լույսերի ծովի մեջ սուզված սոցիալիստական Երևանը, որ թվում էր թե շողշողուն համաստեղություն է, որն ստեղծել է սովետական մարդու ստեղծագործ միտքն ու աշխատանքը։*

*Բյուրականի աստղադիտարանը սերտ կապ է պահպանում Մոսկվայի, Պուլկովոյի, Աբասթումանի, Ալմա-Աթայի, Սիմեիզի և մեր երկրի ուրիշ աստղագիտական կենտրոնների հետ։*

*Վիկտոր Համբարձումյանը ոչ միայն խոշոր գիտնական է, այլև մեր Ռեսպուբլիկայի գիտական մտքի հիանալի կազմակերպիչը, խաղաղության ակտիվ մարտիկ։ Ահա թե ինչու է նա ընտրվում ՍՍՌՄ և Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետների դեպուտատ։*

*Նա խաղաղության պաշտպանության Սովետական Կոմիտեի, գիտության ու գյուտարարության Ստալինյան մրցանակների Կոմիտեի անդամ է։*

*Եվ երբ Հայրենիքը իր լավագույն զավակներին ուղարկում է միջազգային կոնգրես կամ կոնֆերանս, սովետական տաղանդավոր, հայրենասեր գիտնականը զեկուցումներով հանդես է գալիս Լոնդոնում և Փարիզում, Ցյուրիխում և Բեռլինում, Պրագայում և Ստոկհոլմում, միշտ վառ ու համոզիչ կերպով աշխարհի առաջավոր աստղագետներին պատմում է սովետական աստղագիտության խոշորագույն նվաճումների և այն մեծ ներդրումների մասին, որ կատարել են սովետական գիտնականները խաղաղության մեծ գործի մեջ։*

# ԱՄԵՆ ԻՆՉԻ ՄԱՍԻՆ

## ԷԼԵԿՏՐԱԿԱՆ ՕՁԱՁՈՒԿ

*Ֆ. ԱՂԱՍԱՐՅԱՆ*

Հարավային Ամերիկայի տաք ջրերում և Բրազիլիայի գետերում ու ճահիճներում ապրում է մի անսովոր կենդանի, որ կոչվում է էլեկտրական օձաձուկ: Նրա երկարությունը երկու մետր է, իսկ կշիռը՝ 15—20 կիլոգրամ: Նրա օձանման լերկ մարմինը աստիճանաբար բարակելով վերջանում է պոչի թույլ լողակով:

Այս ձուկը կոչվում է էլեկտրական, որովհետև երկու զույգ հատուկ օրգանների միջոցով էլեկտրական ուժեղ հոսանք է արտադրում՝ որս հայթայթելու և թշնամիներից պաշտպանվելու համար: Հոսանք արտադրող օրգանները զբաղեցնում են օձաձկան մարմնի չորս-հինգերորդ մասը: Դրանք կազմված են կարմրա-դեղնագույն մածուցիկ նյութից և ձգվում են մաշկի տակով, գլխից մինչև պոչի լողակը:

Օձաձուկը լույս է արձակում մեծ մասամբ գիշերները: Նա պառկում է լճի կամ գետի հատակին, բայց հաճախ բարձրանում է մակերեսը, գլուխը ջրից հանում, օդ հավաքում ու նորից սուզվում: Սնվում է մանր կենդանիներով՝ ձկներով, գորտերով, խաչափառներով:



Օձաձկները էլեկտրական հոսանք արձակում են այնտեղ, որտեղ շատ որս են տեսնում: Երաշտի ժամանակ չոր եղանակից պաշտպանվելու համար գետերում ու ճահիճներում բնակվող օձաձկները փոսեր են փորում և թաղվում տիղմի ու ցեխի մեջ:

Մի փտնական ակվարիումի մեջ էլեկտրական օձաձուկ էր պահում: Փոքրի ժամանակ նա հանկարծ մոռանում և բռնում է կենդանու պոչից: Էլեկտրական ուժեղ հարվածից նա երկար ժամանակ գլխապտույտ է ունենում: Մի անգամ էլ կիսամեռ օձաձկանը մոտեցել է մի կատու, բայց ուժգին հարվածից ետ է մղվել: Էլեկտրական ուժեղ հոսանքի միջոցով օձաձուկը ոչնչացնում է իր շրջապատում եղած կենդանիներին:

## ԹՐԱՁՈՒԿ

Թրաձուկը ամենատարածված ձկներից է. նա հանդիպում է գրեթե բոլոր ծովերում: Նրա մարմինն ունի երեք, երբեմն էլ հինգ մետր երկարություն և ավելի քան 200 կիլոգրամ ծանրություն: Նրա վերին ծնոտը վերջանում է թրի պես սուր ու երկար ելունդով: Դրա համար էլ կոչվում է թրաձուկ: Այդ ելունդը ծառայում է որպես պաշտպանության ու հարձակման օրգան:

Թրաձուկը հանդիպելով որևէ կենդանու, իսկույն հարվածում է իր թրով: Նա հարվածում է նաև կետին, որի միսը չի ուտում: Նա հարձակվում է նավերի ու նավակների վրա և լուրջ վնասներ հասցնում:

Եղել են դեպքեր, երբ թրաձուկը, հարձակվելով նավերի վրա, ծակել է նրանց մի քանի սանտիմետր հաստություն ունեցող նավակողը: Քիչ չեն մարդկային զոհերը նաև ձկնորսներից:



Թրաձուկը շատ համեղ միս ունի: Այդ պատճառով որսում են հարյուրավոր տոննաներով և պահածոներ են պատրաստում:

## ՌՈՒՍԱԿԱՆ ՇԱԽՄԱՏԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

Հ. ԳԱՍՊԱՐՅԱՆ
(Շախմատի միջազգային վարպետ)

*Ստույգ հայտնի չէ, թե երբ է շախմատը մուտք գործել Ռուսաստան. բայց արդեն 12—13-րդ դարերում Ռուսաստանում շախմատ խաղում էին։ Այն ժամանակ, իհարկե, շախմատը ոչ թե սպորտի ձև էր, այլ զվարճալիքի առարկա։ Մարդիկ շախմատ էին խաղում ժամանակ անցկացնելու համար։ Միայն 19-րդ դարի սկզբում է, որ այդ վերաբերմունքը շախմատի նկատմամբ փոխվում է։ Հայտնվում են շախմատային առաջին գրքերը և առաջին տաղանդավոր ռուս շախմատիստները։ Այդ ժամանակաշրջանում էլ տեղի ունեցան շախմատային առաջին մրցումները։ 19-րդ դարի առաջին նշանավոր ռուս շախմատիստը, Ա. Պետրովն էր, որը շատ ջանք է թափել այդ իմաստալից խաղը Ռուսաստանում տարածելու համար։ Նա է գրել շախմատի առաջին ռուսերեն ձեռնարկը։ Հետագայում հանդես են գալիս նոր տաղանդավոր շախմատիստներ, որոնցից նշանավորներն են Կ. Յանիշը, Ա. Ուրգովը, Ի. Շումովը և ուրիշներ։*

*19-րդ դարի խոշորագույն ռուս շախմատիստը Մ. Ի. Չիգորինն էր, որը դարձավ ռուսական շախմատային դպրոցի հիմնադիրը։ Չիգորինը միաժամանակ աշխարհի ամենաուժեղ շախմատիստն էր։ Նա փայլուն հաղթանակ է տարել միջազգային մրցումներում։*

*Ռուս նշանավոր շախմատիստը ծնվել է 1850 թվականին վաճառականի ընտանիքում։ Նա վաղ հասակում բոլորովին որբացավ։ Ծանր պայմաններում անցան Չիգորինի մանկությունն ու պատանեկությունը։ Շախմատով լրջորեն նա սկսեց զբաղվել միայն 23 տարեկան հասակից, բայց շուտով դարձավ Պետերբուրգի և Ռուսաստանի ամենալավ շախմատիստը։ Նա հայտնի դարձավ նաև ամբողջ աշխարհում։ Չիգորինին չհաջողվեց ձեռք բերել աշխարհի չեմպիոնի կոչումը, բայց նրա նշանակությունը համաշխարհային շախմատային պատմության և հայրենական շախմատային դպրոցի հա-*

մար շատ մեծ է։ Չիգորինը երկու անգամ մրցել է աշխարհի այն ժամանակվա չեմպիոն Ստեյնիցի հետ։ Հետաքրքիր է 1892 թվականին Հավաննայում տեղի ունեցած նրանց հանդիպումը, որտեղ ռուս մեծ շախմատիստը աշխարհի չեմպիոնի կոչումը չնվաճեց մի շատ պատահական դիպվածով։ Նա 23-րդ վճռական նշանակություն ունեցող պարտիայում հասավ խաղը շահելու դրության։

Դրությունը Սևերի 31-րդ քայլից հետո։

Ստեյնից



Չիգորին

Սակայն այստեղ Չիգորինը խաղաց՝

32 Cdb—b4??

և հետո

32 . . . — Лe2:h2+

և Սպիտակները հանձնվեցին։

Այսպիսով բաց թողնելով 2 քայլում խաղը շահելու հնարավորությունը Չիգորինը կոպիտ սխալ թույլ տվեց և այսպիսով բաց թողեց աշխարհի չեմպիոն դառնալու հնարավորությունը։

Եթե Չիգորինին չէր վիճակված դառնալ աշխարհի չեմպիոն, ապա նրա մյուս հայրենակիցը, Ալյոխինը 1927 թվականին նվաճեց այդ կոչումը հաղթելով աշխարհի չեմպիոն Կապաբլանկային։

Սակայն Ռուսաստանում շախմատային արվեստը իր լիակատար ծաղկումն ստացավ Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո։ Սովետական շախմատիստները այժմ ճանաչված հաղթանակներ են տանում միջազգային տուրնիրներում։

Աշխարհի չեմպիոնի պատվավոր կոչումն իր ձեռքում է պահում սովետական գրոսմայստեր Բոտվիննիկը։ 1950 թվականին սովետական շախմատիստ Լ. Ռուդենկոն նվաճեց կանանց մեջ աշխարհի չեմպիոնի կոչումը։

Սովետական շախմատիստները փայլուն հաղթանակ տարան հունգարական շախմատիստ Մարոցիին նվիրված Բուդապեշտի տուրնիրում, ինչպես նաև Հելսինկիում տեղի ունեցած աշխարհի շախմատային 10-րդ օլիմպիադայում։ Սովետական հավաքական թիմը նվաճեց աշխարհի չեմպիոնի պարտավոր կոչումը։

Գրքերի աշխարհում



# «ԵՍ, ԴՈՒ, ՆԱ»

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Հայպետհրատը ռուսերեն հրատարակել է Գ. Բորյանի «Ես, դու, նա» մանկական բանաստեղծությունների ժողովածուն։ Այդ բանաստեղծությունները պատկերում են մեր ուրախ ու երջանիկ երեխաների կյանքը, նրանց վերաբերմունքը դեպի բնության երևույթները, դեպի մեր իրականությունը։ Գ. Բորյանի պատկերած երեխաները բնության երևույթներից չեն վախենում, չեն խուսափում նրանց հանդիպելուց։ Նրանք այդպիսի դեպքերում մանկական արիություն են հանդես բերում։ Ահա օրինակ, «Քամին» բանաստեղծության մեջ երեխային բոլորովին էլ չի վախեցնում քամու ոռնոցն ու լացը, որ լսվում է պատուհանի տակ։ Ընդհակառակը, փոքրիկ խիզախը հրամայում է, որ քամին լռի իրեն, իսկ հետո հրավիրում է նրան իր հետ քնելու միևնույն անկողնում։ Երեխաների նոր վերաբերմունքը դեպի բնությունը երևում է նաև «Ամպերը», «Լայկան անձրևը», «Ես և իմ արձագանքը» և այլ բանաստեղծություններում։

Գ. Բորյանը մի շարք բանաստեղծություններում նկարագրում է, թե ինչպիսի լայն հնարավորություններ են ստեղծված սովետական երեխաների կյանքի և ուսման համար։ Նրանք կարող են ազատ խաղալ, զբոսնել, դպրոց ընդունվել։ Նրանց ոչ միայն այսօրը, այլև ապագան է ապահովված։ «Ես, դու, նա» բանաստեղծության հերոսը ասում է.

Մենք արևի
Զավակներ ենք,
Չկան ուրիշ
Մեզ պես.
Ազատ, անվիշտ

Ապրում ենք մենք—
Ե՛վ նա,
Ե՛վ դու,
Ե՛վ ես...

Դեռ ծիլ ենք նոր,
Ծաղիկ ենք մենք,
Երգում, խաղում
Այսպես.
Նոր աշխարհի
Գալիքն ենք մենք՝
Ե՛վ դու,
Ե՛վ նա,
Ե՛վ ես:

*Գրքում կան նաև գործեր, որոնք նկարագրում են նախադպրոցական տարիքի մանուկների առօրյան: «Խելոք տղան» բանաստեղծության մեջ փոքրիկ սերմնացանը հատիկ է ցանում իր մշակած «ար-տում», որպեսզի թռչունների համար կերի պաշար հավաքի: Մի ուրիշ բանաստեղծության մեջ կենդանի օրինակների միջոցով Սուրիկը հաշվել է սովորում: «Նկարը» բանաստեղծության մեջ եղբայրը քրոջը ցույց է տալիս իր նկարած տեսարանը՝ երկինք, ամպ, լեռ, տնակ, գետ, կամուրջ և գետի ափին Աշոտ պապը՝ ձուկ որսալիս:*

*Մի շարք բանաստեղծությունների մեջ ցույց է տրված երեխաների երազանքները: Օրինակ՝ «Ինկ դո՞ւ»-ում ամեն մի երեխա ապագայում իրեն պատկերացնում է օդաչու, բժիշկ, գյուղատնտես, ծովագնաց, կառուցող, գեներալ, նկարիչ:*

Գ. Բորյանի *բանաստեղծությունները գրված են մատչելի լեզվով: Նրանք հակիրճ են և բովանդակալից: Բանաստեղծի այս գրքույկը դաստիարակչական մեծ նշանակություն ունի և լավ նվեր է մեր երեխաներին: Գիրքը լավ է նկարազարդել Պ. Մալայանը:*

Հ. ՇԻՐԱԶՅԱՆ

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

**Փորձեցեք գտնել**

Քարտեզի ուրվանկարի վրա գծած այս ձևը ճշտությամբ արտանկարեցեք և բաժանեցեք չորս մասի այնպես, որ ստացվի աշխարհի ամենամեծ երկրի անունը:



**Կրոսվորդ**

«Մեր Հայրենիքի պատմությունից»

Արտանկարեցեք այս կրոսվորդը սովորական վանդակավոր թղթի վրա, բայց առանց համարակալման: Վանդակները լրացնելու համար դուք կօգտվեք տպագրված կրոսվորդի համարների հերթականությունից: Ձեր խնդիրն է՝ ամեն մի վանդակում գրել մեկ բվանշան այնպես, որ ուղղահայաց և հորիզոնական շարքերում ստացվի մեր հայրենիքի պատմության հերթև նշանակված դեպքերի թվականները:

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ.— 1. Առաջին հիշատակումը Մոսկվայի մասին: 2. Ճորտատիրական իրավունքի վերա-




ցումը Ռուսաստանում: 4. Պետերբուրգի հիմնադրումը: 5. Նովգորոդի միացումը Ռուսական պետությանը: 8. Կիպեցյան ճակատամարտը: 10. Կոզակների և գյուղացիների ապստամբությունը Ուկրաինայում Բոգդան Խմելնիցկու ղեկավարությամբ: 11. Ռուսաստանի ազատագրումը մոնղոլա-թաթարական լծից Իվան 3-րդի օրով: 12. Իգոր Սվյատոսլավիչի ճակատամարտը պոլովցիների դեմ: 16. Պատերազմը Ռուսաստանի և Ֆրանսիայի միջև Նապոլեոն 1-ի օրով: 17. Դեկաբրիստների ապստամբությունը:

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ.— 3. Իվան Կալիտայի Վլադիմի-

րյան մեծ իշխանի կոչում ստանալը: 6. Կոզակների և գյուղացիների ապստամբությունը Բուլավինի ղեկավարությամբ: 7. Ալեքսանդր Յարոսլավիչի հաղթանակը Շվեդների դեմ Նևա գետի վրա: 8. Կուլիկովյան ճակատամարտը: 9. Երմակի արշավանքը դեպի Արևմրտյան Սիբիր: 13. Ուկրաինայի միավորումը Ռուսաստանի հետ: 14. Ղրիմի միացումը Ռուսաստանին: 15. Վրաստանի միացումը Ռուսաստանին: 17. Կազանի գրավումը Իվան 4-րդի զորքերի կողմից: 18. Ալեքսանդր Նևսկու հաղթանակը գերմանական ասպետների դեմ (սառցաճակատ):

### Հատակ-խնդիրներ

1. Տրված է երկու թիվ 2 և 3. նրանց միջև դրեք այնպիսի մի նշան, որ ստացված թիվը լինի 2-ից մեծ և 3-ից փոքր:

2. Գտեք երկու այնպիսի թվեր, որոնց գումարը կազմի 55, իսկ նրանցից մեկը մյուսից լինի հիսունով մեծ:

### Մեր երկիրը պարաշյուտի հայրենիքն է

Ավիացիոն պարաշյուտի գյուտի առաջնությունը պատկանում է մեր մեծ Հայրենիքին: Դեռ 1911 թվականին ռուսական հրետանու մի ենթասպա ստեղծեց աշխարհում առաջին ավիացիոն պայուսակավոր



պարաշյուտը, որի սխեմայով էլ կառուցվել են ժամանակակից բոլոր պարաշյուտները:

Ձախ կողմի պարաշյուտի տառերը տեղադրեցեք համաձայն աջ կողմի պարաշյուտի թվերի և դուք կստանաք գյուտարարի ազգանունը:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջի վրա՝ «Գնում է պիոներ»
*Գործ նկ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆԻ*


*Խմբագիր՝* ՍԵՎՈՒՆՑ Գ.
*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԲԱՏԻԿՅԱՆ ՀՐ., ԻՍԱԲԵԿՅԱՆ Է., ՀԱԿՈԲՅԱՆ Գ., ՄՈՎՍԻՍՅԱՆ Ա., ՍԻՄԱԿ, ՍԻՄՈՆՅԱՆ Ե., ՏԱԼՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ս.

Журнал „Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21
*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*
*ՎՖ 06718, Պատվեր 456. Տիրաժ 5000. Տպագրական 2 1/4 մամուլ. Ստորագրված է տպագրության 15/IX—52 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65, 1952 թ.*




### Ա. Ն. Ռադիշչև
(1749—1802)

«Պուգաչևից ավելի մեծ խռովարար» — այսպես է անվանել Եկատերինա 2-րդը Ռադիշչևին, կարդալով նրա «Ճանապարհորդություն Պետերբուրգից Մոսկվա» գիրքը:

Ռուս մեծ գրող-ռևոլյուցիոներ և փիլիսոփա Ալեքսանդր Նիկոլաևիչ Ռադիշչևը ծնվել է 1749 թվականին ազնվականի ընտանիքում: Նա ստացել է լավ կրթություն, սովորել է Լայպցիգի համալսարանում: Վերադառնալով



Ռուսաստան, Ռադիշչևն իր ամբողջ ուժերը և գիտելիքները նվիրում է ռուս ժողովրդի ազատագրման մեծ գործին: Ռուսաստանում Ռադիշչևը զգում է ճորտատիրական սիստեմի նողկալիությունը: Նա գրում է.

«Ես նայեցի իմ շուրջը և իմ հոգին մարդկային տանջանքներով խոցոտվեց»:

Ա. Ն. Ռադիշչևը գրում է հայրենասիրական և փիլիսոփայական մի շարք գրքեր՝ «Ֆեոդոր Վասիլևիչ Ուշակովի վարքագրությունը», «Զրույց այն մասին, թե ինչ է հայրենիքի զավակը», «Մարդու, նրա մահացության և անմահության մասին»:

1790 թվականին նա հրատարակում է իր գլուխ գործոցը՝ «Ճանապարհորդություն Պետերբուրգից Մոսկվա» գիրքը, որի նմանը դժվար է գտնել 18-րդ դարի գրականության մեջ: Ռադիշչևն այդ գրքում մեծ վարպետությամբ ցույց է տվել ռուս ժողովրդի տառապալից վիճակը ցարական տիրապետության պայմաններում: Նա մերկացրել է կալվածատերերին, կաշառակեր դատավորներին, չինովնիկներին և կոչ է արել ոչնչացնել ճորտատիրական դաժան կարգերը, զարգացնել արդյունաբերությունը և գյուղատնտեսությունը, ժողովրդի մեջ լուսավորություն տարածել: Ռադիշչևն անսասան հավատով էր լցված ռուս ժողովրդի ապագայի նկատմամբ: Նա գրում է.

«Ժողովուրդը կբարձրանա և որպես անհարկու վրիժառու կկործանի «չուգունի գահը»: Ռադիշչևը ժողովրդական ռևոլյուցիայի կողմն էր:

Բանտը, մահապատժի սպառնալիքը, Սիբիրը չընկճեցին ռևոլյուցիոներ գրողին և նա մինչև ողբերգական մահը հավատարիմ մնաց իր գաղափարներին:

### 140 տարի առաջ

Բորոդինոյի ճակատամարտը 1812 թվականի Հայրենական պատերազմի պատմության ամենափայլուն դրվագներից մեկն է: Ինչպես վկայում են ժամանակակիցները, «ամբողջ Ռուսաստանը արշավանքի ելավ» ֆրանսիական կայսր Նապոլեոնի բանակի դեմ, իր հայրենիքի անկախությունը պաշտպանելու համար:

140 տարի առաջ, 1812 թվականի սեպտեմբերի 7-ին, Բորոդինոյի դաշտում ռուսական բանակը հանդիպեց ֆրանսիական բանակին և մեծ ճակատամարտ տեղի ունեցավ:

Ֆրանսիացիների կողմից ճակատամարտին մասնակցում էր 130 հազար զինվոր, իսկ ռուսների կողմից՝ 110 հազար: Ռուսական բանակը ղեկավարում էր Սուվորովի աշակերտ, մեծ զորավար Մ. Ի. Կուտուզովը: Կատաղի մարտերը տևեցին մինչև երեկո: Երկու կողմից էլ կորուստները մեծ էին: Բայց ֆրանսիական բանակի կորուստները չափից ավելին էին: Ռուսական բանակը կազմակերպված կերպով նահանջեց: Ճակատամարտում հերոսաբար զոհվեց Բագրատիոնը: Բայց ռուսները իրենց ոչ պարտված էին զգում, ոչ էլ պարտված համարում: Ռուս ժողովուրդը այդ ճակատամարտում ցուցադրեց իր մեծ հայրենասիրությունը, հերոսությունն ու քաջությունը, հաղթելու կամքը: Այդտեղ երևաց ռուս զորավարների հրմտությունը ռազմական գործում:

Բորոդինոյի ճակատամարտը սկիզբ դրեց Նապոլեոնի բանակի քայքայմանը:

### Սայաթ-Նովա
(1712—1795)

1795 թվականին պարսից շահ Աղա-Մահմեդ խանի զորքերը մտան Թիֆլիս: Փողոցներում կատաղի մարտեր բռնկվեցին: Շատերի թվում սպանվեց նաև նշանավոր բանաստեղծ-գուսան Սայաթ-Նովան:

18-րդ դարի հայ հանճարեղ երգիչ Սայաթ-Նովան (Հարություն Սայադյան) ծնվել է 1712 թվին Թիֆլիսում: Երբ լրանում է Հարությունի 12 տարին, նա ջուլհակություն է սովորում, հետագայում դառնում վարպետ: Սակայն փոքր հասակից Սայաթ-Նովան բուռն հետաքրքրություն է ցույց տալիս դեպի ժողովրդական երգիչների արվեստը: Նա սկսում է սովորել երգել ու նվագել:



Թողնելով ջուլհակությունը, նա նվիրվում է երգին ու երաժշտությանը:

Սայաթ-Նովան գրել ու երգել է իր համար հավասարապես սիրելի ու մատչելի կովկասյան երեք լեզվով՝ հայերեն, վրացերեն և ադրբեջաներեն:

Սայաթ-Նովան բուռն կերպով սիրել է աշխատավոր ժողովրդին, «խալխին», որին և ծառայել է իր երգ ու նվագով, իր կախարդիչ բանաստեղծություններով:

Նա ժողովրդի փրկությունը տեսնում է նրա լուսավորության մեջ և դրա համար էլ նրան դիմում է հետևյալ խոսքերով. «Գիր սիրե, դալամ սիրե, դավթար սիրե»:

Սայաթ-Նովայի հայերեն խաղերի ժողովածուն առաջին անգամ լույս է տեսել 1852 թվին:

ԳԻՆԸ 2 Ռ.

# ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԽՄԲԱԿՆԵՐՈՒՄ



Աբովյանի անվան դպրոցի 6-րդ դասարանի աշակերտ Ռոմեն Դադեխյանը և 8-րդ դասարանի աշակերտ Յաշա Ղազարյանը այս տարի ընդունվել են Պիոներների պալատի մեխանիկական խմբակ:

Տախտակների վրա ամրացված են երեխաների պատրաստած մետաղյա գործիքները:



Գրիբոեդովի անվան դպրոցի աշակերտներ՝ Պարիս Ստեփանյանը և Ռոբերտ Դաշտոյանը Պիոներների պալատի էլեկտրամեխանիկական խմբակի ակտիվ անդամներից են: Նրանք ֆիզիկայի սարքերի և գործիքների 1952 թվականի մարտին կազմակերպված քաղաքային դպրոցական ցուցահանդեսում շահել են առաջին և երկրորդ մրցանակ:

Նկարում՝ Պ. Ստեփանյանը աշխատեցնում է իր պատրաստած պտտվող մագնիսական դաշտը, իսկ Ռ. Դաշտոյանը՝ երկու լամպային ուժեղացուցիչը:

Ֆոտո Ք. ՍԵՎԱՆՑՅԱՆԻ